

# ՄԱՅԻՍ

*ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ*

Բլուրների վրա արեգակը ծաղկեց,
Պատուհանները լա՛յն, լա՛յն ժպիտներ դարձան,
Մանուկները տանից ելան ծաղիկ-ծաղիկ
Ու գույներով լցված փողոցներով անցան:

Փողոցներով անցան, դեպի դաշտ գնացին,
Որտեղ գույների մեջ քամին էր վազվզում,
Որտեղ թռչունների, ծաղիկների լեզվով
Հավերժ երիտասարդ արեգակն էր խոսում:

Աղավնիներն օդում թռչում՝ ծաղիկ-ծաղիկ
Եվ գովքն էին անում հողի՛, արեգակի՛,
Ու ցրվելով օդի կույս ալիքներում՝
Բառերն էին դառնում խաղաղության երգի:

Մանուկները ահա՛, ահա՛, դաշտ են մտնում.
— Էհե՛յ, մայի՛ս, եկել ու ողջունում ենք քեզ,
Ե՛կ դաշտերի վրա, բլուրների վրա
Ողջ աշխարհի վրա բացենք տոնահանդես:

digitised by A.R.A.R.@





# Արտյոմ ՄԻԿՈՅԱՆ

(1905—1970)

Հայրենական պատերազմի առաջին իսկ ժամերից գերմանական օդաչուները հանդիպեցին սովետական ոչ մեծ, երկարաթիթ կործանիչների, որոնք դեռևս չէին մտել գերմանական ավիացիոն տեղեկատուների մեջ: Թշնամին հետո իմացավ նրա անվանումը՝ ՄԻԳ-3: Այն փաստը, որ սահմանի վրա կենտրոնացված յուրաքանչյուր 980 կործանիչներից 886-ը այդ ՄԻԳ կոչվածներից էին, որոշ բան արդեն հուշում էր ֆաշիստներին:

...Այն ժամանակ՝ 1905 թվականի օգոստոսի 5-ին, ո՞վ մտքով կանցներ, որ սանահինեցի Հովհաննեսի տանը նոր ծնված մանչուկի ազգանվան նույնիսկ մեկ տառը հետագայում սփռի ահ ու սարսափով լցնի հիտլերականների սրտերը:

Անհոգ է անցել Անուշավանի մանկությունը: Իր հասակակիցների հետ քանի՜-քանի անգամ է ուլերի ու գառների հետևից բոկոտն վազել Անուշը՝ այսպես էին կոչում նրան բոլորը: Այնուհետև սովորել է Սանահինի ծխական դպրոցում: Մի օր էլ ընկերներն ու Ոսկեհատ և Աստղիկ քույրերը կանգնել են գյուղի ծայրին, հրաժեշտ տվել ու երկար նայել ոլորապտույտ ճանապարհով դեպի Դեբեդի ձորը հեռացող Անուշի ու մոր հետևից:

Սանահին գյուղից մինչև գիտության բարձունքները տանող դժվարին ճանապարհի սկզբին էր դա:

Այնուհետև Թիֆլիսի միջնակարգ դպրոց, Ռոստովի ֆաբրիկա-գործարանային ուսումնարան, Մոսկվայի «Դինամո» գործարան, Կարմիր բանակ, Ժուկովսկու անվան ռազմաօդային ինժեներական ակադեմիա...

Ուսանողական տարիներին ցուցաբերած համարձակությունը (նա իր ընկերների մեջ առաջին պարաշյուտային թռիչք կատարողն եղավ) պահպանվեց մինչև կոնստրուկտորի կյանքի վերջը՝ դրսևորվելով նրա բազում ստեղծագործական ծրագրերում:

Նրա ակնառու տաղանդն ու համարձակությունն էր պատճառը, որ Միկոյանին թռիչքների ուսուցանելու պարտականությունը հոժարակամ ստանձնեց լեգենդար Վալերի Չկալովը:

Միկոյանը, լինելով անկաշկանդ մտածող, ցուցադրեց իր մտքի թռիչքն ու ստեղծագործական համարձակությունը: Այդ էր պատ-



digitised by A.R.A.R.@



# ՍՈԽԱԿԸ

ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ

Օդեսայից ո՛չ այնքան հեռու,
Ուր թփուտներն են ծաղկում մայրենու,
Սոխակներն են միշտ դայլայլում հիմա...

Բայց քառասունմեկի ամռանը այն բարկ,
Նույն մացառների ու թփերի տակ
Մի ուրիշ, ուրիշ սոխակ էր երգում...

Վիտյան դեռ փոքր էր, ինն-տաս տարեկան,
Բայց մահ էր տեսել շատ ու շատ անգամ,
Հայրենի տունն էր դարձել փլատակ,
Ու մնացել էր մայրը նրա տակ...
Պարտիզանական մի մեծ ջոկատում
Վիտյա-պատանին գտավ տեղ ու տուն:
— Դու սուլել գիտե՞ս,— հարցրեցին նրան:
— Սոխակից էլ լավ,— պարծեցավ տղան:
Պարզվեց, որ Վիտյան զուր չպարծեցավ,
Այդ օրից «Սոխակ» անունն ստացավ:

Վիտյան թաքնված թփերի մեջ խիտ
Կամ ծառի վրա մի տերևախիտ,
Նայում էր, չորս կողմ՝ հայացքը սրած,
Երբ տանկ էր տեսնում կամ թե մի գնացք,
Կավից թրծված սուլիչով իսկույն
Դայլայլում էր նա ու շունչը պահում:
Եվ մանուկ սրտի տագնապները խոր
Անցուղիներն են հասնում գետնափոր:
Թաքստոցներից անտեսանելի,
Անսպասելի ոգիների պես,
Պարտիզանները դուրս էին թռչում
Եվ տանկ ու գնացք իսկույն խորտակում...

Մի օր էլ հանկարծ Սոխակը լռեց...
Բայց հիմա արդեն, շատ տարիներ անց,
Այնտեղ վիթխարի արձան է գրված
Ու պատկերված է մեծերի կողքին
Պարտիզան Վիտյան՝ սուլիչը ձեռքին:

Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ

---

ճառը, որ նկատեցին Միկոյանին ու հանձնարարեցին ստեղծել իր կոնստրուկտորական բյուրոն: Դա 1939 թվականն էր:

Եվրոպայում մոլեգնում էր ֆաշիզմը: Մեր երկրի գլխին նույնպես կախվել էր վտանգը: Հայրենիքին օդ ու ջրի պես հարկավոր էին տեխնիկապես հագեցած նոր կործանիչներ: Միկոյանը աշխատակցային ընկերների, հատկապես իր ընկեր ու օգնական Գուրևիչի հետ շատ անքուն գիշերներ անցկացրեց գծագրերի վրա հակված: Ռեկորդային կարճ ժամկետում ծնվեց առաջնեկը, որին կնքեցին ՄիԳ-1 անվամբ, որն իր մեջ պարունակում է Միկոյանի ու Գուրևիչի ազգանվան սկզբնատառերը:

Թեկուզ ՄիԳ-1-ը հենց առաջին թռիչքով գերազանցեց իր ստեղծողների սպասելիքները, սակայն նրանք չնիրհեցին դափնիների վրա: Շարունակեցին որոնումները... Եվ շուտով ծնվեցին ՄիԳ-1-ի եղբայրները՝ ՄիԳ-3, ՄիԳ-9, ՄիԳ-15, ՄիԳ-17, առաջին սովետական գերձայնային ՄիԳ-19-ը, ՄիԳ-21-ը...

Թվարկումը կշարունակվեր, եթե 1970 թ. դեկտեմբերի 9-ին Մոսկվայում վաղաժամ չընդհատվեր ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս, ինժեներատեխնիկական ծառայությունների գեներալ-գնդապետ, սոցիալիստական աշխատանքի կրկնակի հերոս, լենինյան մրցանակի և պետական մրցանակների վեցակի դափնեկիր Արտյոմ Հովհաննեսի Միկոյանի կյանքը: Ստեղծագործական սխրանքներով լեցուն մի կյանք, որը օրինակ ու դաս կարող է հանդիսանալ սերունդների համար:

ԱՐՄԵՆ ՀԱՄԲԱՐՅԱՆ


9487-ԱՄ

# ՄԻ ԵՐԿԱՐ, ՄԻ ԿԱՐՃ ԱՐՁԱԿՈՒՐԴ

ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ

### ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ

## ԱԿԱՄԱ ՄԵՂԱՎՈՐՆԵՐ

Հեռախոսն աղմկեց: Հայրը վեր թռավ անկողնուց և, որպեսզի դստերը չխանգարի, հեռախոսը գրկած խոհանոց մտավ: Ըստ երևույթին, անսպասելի բաներ էին հաղորդում, որովհետև նա մերթընդմերթ ընդհատում էր խոսակցին ու գոռում.

— Ջուրը գալի՛ս է... ինքն իրե՞ն... հիմա՛, հիմա՛ գալիս եմ...

Նա մտավ սենյակ, մի պահ կանգ առավ. մտածեց, թե հետը կատակ չե՞ն անում: Նորից գնաց խոհանոց, պտտեց ծորակը: Ջուրը գլգլաց խողովակի մեջ ու խշշալով լցվեց կոնքի մեջ: Հայրը շտապ դուրս գնաց և անաղմուկ ծածկեց դուռը: Կատյան քնած չէր: Նա լսեց հոր հեռախոսային խոսակցությունը, և հայրը երևի դեռ շքամուտքից դուրս եկած չէր լինի, նա վեր ցատկեց տեղից և արագ-արագ հագնվեց: Վաղորդյան արևը բանավանը ողողել էր նարնջագույն ճառագայթներով ու, թվում էր, աշխարհում չի կարող այնպիսի վայր լինել, որտեղ հիմա բուք լինի, ձյուն ու ողորկ սառցադաշտեր: Այդ առավոտ այնպե՛ս բարի էին շրջակա լեռները և այնպիսի՛ մեղմ ու կապույտ հայացքով էին Սևանին նայում: Կատյան արագ-արագ գնում էր ու լսում, թե ինչպես են կանայք պատուհաններից ձայն տալիս իրար.

— Ջո՛ւրը, ջո՛ւրը եկել է, բոլոր ամանները լցրե՛ք, քանի նորից չի կտրվել...

Գրասենյակի մոտ նույնպես բոլորը ջրի մասին էին խոսում:

— Այդ ինչպե՞ս է ակը ինքն իրեն բացվել:

— Ջուրն այդպես է, ինչ ուզում ես արա, իր ճամփան կգտնի,— փորձված էին ձևանում ոմանք:

Կատյան հայացքով որոնեց, գտավ ընկերներին ու աննկատ կանգնեց նրանց կողքին: Բայց տղաները գլխով հազիվ պատասխանեցին նրա բարևին: Նրանք մռայլ էին, մինչև անգամ տխուր: «Ի՞նչ է պատահել,— չէր հասկանում Կատյան,— ամեն ինչ լավ է վերջացել, ինչո՞ւ են քթերը կախել: Նարեկը երևի տխրել է Ջիմմիի համար, իսկ Վիտյա՞ն...»

— Հը՛, այստե՞ղ եք:

Երեքն էլ միաժամանակ շրջվեցին:

Նրանց դիմաց կանգնած էր Տիգրանն ու խորամանկ ժպտում էր:

Այդ պահին գրասենյակի դուռը բացվեց ու դուրս եկավ ընկեր Մանուկյանը: Հորատանցողների աղմըկոտ վիճաբանությունները դադարեցին: Բոլորը շըրջվեցին դեպի տեղամասի պետը՝ սպասելով նրա կարգադրությանը: Բայց նա փոխանակ բանվորներին դիմելու, կտրուկ քայլերով մոտեցավ երեխաներին ու ոտից գլուխ չափեց նրանց:

Նարեկը զգաց, որ հայրը սաստիկ վայրացած է:

— Հերոսնե՛ր,— պոռթկաց ընկեր Մանուկյանը, ձեզ պետք է առանձին-առանձին արձան կանգնեցնել, որովհետև առանց ձեզ մենք կորած ենք, առանց ձեզ այս թունելը չի փորվի...

Երեխաները շփոթված նայեցին իրար:

— Հը՛, ինչո՞ւ եք սսկվել,—չէր հանգստանում տեղամասի պետը,— ուրիշ դեպքում բլբուլ եք կտրում ու գլուխ գովում, դե խոսեք, է՛, մեծ բան եք արել...

Թունելագործները շրջապատել էին երեխաներին ու դեռ չէին հասկանում, թե ինչ է տեղի ունեցել: Բայց երեխաները կարծես գլխի էին ընկել, թե ինչ նկատի ունի ընկեր Մանուկյանը: Բայց ախր ո՞վ էր իրենցից գլուխ գովել, ո՞վ էր բերանբացություն արել, ո՞վ: Մի՞թե Տիգրանը...

Տեսնելով, որ երեխաները քարի պես լուռ են, տեղամասի պետը շրջվելով դեպի հորանը, մատը թափ տվեց որդու վրա.

— Էլ մյուս անգամ չտեսնեմ, որ քթներդ ձեզ չըվերաբերվող գործերի մեջ խոթեք... Ինչպե՞ս էլ չես ամաչում, կարողանում ես թերթեր ու թղթակիցներ իրար խառնել, թերթերում քո մասին նյութեր տպագրել: Մեծամի՜տ...

Հայրը ձեռքի լրագիրը շպրտեց գետին ու քայլեց դեպի հորան: Բանվորները հետևեցին նրան: Միայն Տիգրանը մնաց երեխաների մոտ: Բայց նա էլ փոխանակ երեխաներին սփոփելու, ատամների արանքից նետեց.

— Ես էլ ձեզ տղամարդ էի կարծում, գաղտնիքներ էի վստահում...

Տիգրանը սուրաց ընկերների ետևից: Եվ որքան նա հեռանում էր, այնքան երեխաները իրենց մենակ ու ջախջախված էին զգում: Այդ ի՞նչ թերթի ու թղթակ-

---

Սկիզբը՝ 1976, № 12, 1977 №№ 1, 2, 3, 4։



digitised by A.R.A.R.@

CCCP

*Մայիսի 28-ը սահմանապահի օրն է*

## ՍԱՀՄԱՆԻ ՎՐԱ

*ԳՐԻԳՈՐ ՄԱԶՄԱՆՅԱՆ*

Սահմանի վրա հովը չի ննջում,
Շշուկ է բերում օտար ափերից,
Եվ այդ շշուկն է ձորում դողանջում,
Հակում է անգամ լուսինն ամպերից:

Երբ ոտք է դնում մեկը չարակամ՝
Այնպես են ծառ ու թփերն աղմկում,
Թմբուկ է դառնում մայր հողը մի պահ
Լո՜ւռ, խորհրդավոր գիշերվա գրկում...

Մոլորեցնում են ճամփա ու կածան,
Մթնում լույսերը փշեր են դառնում,
Ու ամեն թփից, թվում է, անձայն
Սահմանապահն է աներկյուղ հառնում:

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ*

ցի, ի՞նչ հոդվածի մասին էր խոսում Նարեկի հայրը: Իրենք առավոտն էին միայն սարից վերադարձել, ինչպե՞ս կարող էր այդ մասին գրված լինել թերթում: Չէ՛, այստեղ մի թյուրիմացություն կար:

Երբ հորատանցողների բրիգադը անհայտացավ հորանի երախի մեջ, երեք ընկերները արագ վերցրին գետին ընկած թերթը: Այնտեղ, իրոք, խոշոր տառերով գրված էր իրենց անունները:

...Այո՛, այո՛, հենց այն մորուքավորը, որ իրենց խոսեցնում էր Երևան տանող ավտոբուսի մեջ, երկարբարակ նկարագրել է, թե ինչպես են բանավանում ապրող երեք երեխաներ փրկել վթարի ենթարկված իրենց ծնողներին, ինչպիսի անձնապոհություն և խիզախություն են ցուցաբերել նման քայլ կատարելու համար: Ճիշտ էր ասում ընկեր Մանուկյանը. հոդվածը այն տպավորությունն էր թողնում, որ առանց երեխաների հորատանցողները կորած են, որ եթե երեք ընկերները չլինեն, թունելը չի փորվի:

Բայց ի՞նչ մեղք ունեին Կատյան, Վիտյան ու Նարեկը: Իրենք որտեղի՞ց իմանային, որ մորուքավոր լրագրողը այդպիսի բան կանի: Նրա գրածից դուրս էր գալիս, թե իբր լրագրողը երեխաների արածները տեսել է իր աչքով ու ինքն իր բոլոր նկարագրությունների ականատեսն է եղել:

— Հիմա ի՞նչ պիտի անենք,— շշնջաց Կատյան:

Տղաները թոթվեցին ուսերը:

*(Այս վիպակը ամբողջությամբ դուք կկարդաք առանձին գրքով, որը հանձնված է տպագրության):*

## ՈՒՍՏ-ԿՈՒՏԻՑ ՄԻՆՉԵՎ ԱՄՈՒՐԻ ԿՈՄՍՈՄՈԼՍԿ

Դու շատ ես լսել ԲԱՄ-ի՝ տասներորդ հնգամյակի խոշորագույն կառույցի մասին: Գիտես, որ նոր երկաթուղին Բայկալից հասնելու է մինչև խաղաղօվկիանոսյան նավահանգիստներ, անցնելու է խտատայգով, ամայի վայրերով, անանցանելի ճահճուտների, տայգայի միջով, բարձրաբերձ լեռների և հորդառատ գետերի վրայով:

Իսկ ինչո՞ւ են հենց այստե՛ղ ճանապարհ կառուցում: Մի՞թե չէր կարելի ճանապարհն անցկացնել այնպիսի վայրերով, որ կառուցելը համեմատաբար հեշտ լիներ:

Ո՛չ: ԲԱՄ-ը անհրաժեշտ է հենց ա՛յդ շրջաններին:

### ԺԱՆՆԱՊԱՐՀ Է ԱՆՀՐԱԺԵՇՏ

Սիբիրի արևելքում, որտեղով անցնելու է նոր մայրուղին, տայգան օգտակար հանածոների՝ մետաղների, ածխի, փայտանյութի հարուստ պաշարներ է թաքցնում:

ԲԱՅԿԱԼԻՑ ՀՅՈՒՍԻՍ ընկած են գունավոր մետաղների՝ նիկելի, կոբալտի, վոլֆրամի, մոլիբդենի, ոսկու հանքաշերտեր:

Լեռնայի վերին հոսանքներում, ՄԱՐԿՈՎՈ գյուղի մոտակայքում, երկրաբանները նավթ են հայտնաբերել:

ՎԻՏԻՄ ԳԵՏԻՑ ԱՐԵՎԵԼՔ, Ուդոկանում, կա մի լեռ: Արտաքուստ այն ոչնչով չի տարբերվում սիբիրյան մյուս լեռներից: Սակայն լեռան ընդերքում ՊՂՆՁ՝ կարմիր ոսկի կա: Պղինձը չափազանց անհրաժեշտ է ժողովրդական տնտեսությանը. դրանից են ստանում լավագույն հաղորդալարերը: Սակայն մինչև պղինձ արտադրող գործարաններ կառուցելն ԱՆՀՐԱԺԵՇՏ Է ԺԱՆՆԱՊԱՐՀ ԿԱՌՈՒՑԵԼ:

ԱԼԴԱՆ ԳԵՏԻՑ ԱՅՆ ԿՈՂՄ ՀԱՐԱՎԱՅԻՆ ՅԱԿՈՒՏԻԱՆ Է՝ ոսկեբեր հողաշերտերով հարուստ մի երկրամաս, ուր երկրաբանները հայտնաբերել են

digitised by A.R.A.R.@

նաև այլ գանձեր՝ քարածուխ և մետաղ: Հարուստ ածխաշերտերն այստեղ կարծես կուտակվել են մետաղի հանքաշերտերի վրա: Մետաղամշակման գործարանի ավելի հարմար տեղ չես գտնի: Էլ ի՞նչ է պետք: ԵՐԿԱԹՈՒՂԻ:

ԲԱՄ-ն անցնելու է տայգայի միջով, հսկայական, գրեթե ձեռք չտված ԱՆՏԱՌՆԵՐԻ ԿԱՆԱՉ ԾՈՎԻ ՄԻՋՈՎ: Փայտամշակման գործարաններ կառուցելու և փայտանյութը տեղափոխելու համար ՃԱՆԱՊԱՐՀ Է ՀԱՐԿԱՎՈՐ:

ԲԱՄ-ն անհրաժեշտ է ոչ միայն Անդրբայկալին: Այն անհրաժեշտ է նաև ավելի հյուսիս ընկած երկրամասերին:

Մեր հայրենիքի տարածքի ավելի քան 1/3-ը գտնվում է հյուսիսում: ՅԱԿՈՒՏԻԱ, ՄԱԳԱԴԱՆԻ ՄԱՐԶ, ՉՈՒԿՈՏԿԱ. միայն այս վայրերում արդեն հայտնաբերված քարածխի պաշարները կարող են հարյուրավոր տարիներով ապահովել մեր երկրի գործարաններին և ֆաբրիկաներին: Այստեղ և՛ ԲՆԱԿԱՆ գազ կա, և՛ օգտակար հանածոներ: Սակայն առանց մեքենաների և տեխնիկայի ինչպե՞ս շահագործել այդ օգտակար հանածոները: Երկրի կենտրոնական շրջաններից բուլդոզերներ և էքսկավատորներ տեղափոխել այստե՞ղ: Այդպիսի տեղափոխությունները թանկ են, ո՛չ շահավետ:

Ելքը մեկն է. ոչ թե հեռուներից մեքենաներ բերել, այլ տեղում պատրաստել: Սակայն հյուսիսում մեքենաշինական գործարաններ կառուցելն այնքան էլ հեշտ չէ: Հավերժական սառնամանիքը միակ խոչընդոտը չէ: Որտեղի՞ց մետաղ՝ գործարանների համար հիմնական արտադրական հումք գտնել:

Այդպիսի գործարան կառուցվելու է Անդրբայկալում, ԲԱՄ-ի վրա, ուր մետաղի հանքեր շատ կան: Այս հսկայական գործարանը կարտադրի չուգուն, պողպատ, գլանվածք: Եվ այդ ժամանակ արդեն հնարավոր կլինի մեքենաշինական գործարաններ կառուցել հյուսիսում: Կլինեն գործարաններ՝ կլինի նաև հյուսիսի հետագա յուրացման համար անհրաժեշտ տեխնիկան:

## ԻՍԿ ԵՐԲ ԿԱՆՑՆԵՆ ԳՆԱՑՔՆԵՐԸ...

Այժմ պատմենք նոր՝ 2000 թվականի Սիբիրի մասին:

Հզոր լոկոմոտիվները բեռների քարավաններ կտեղափոխեն Բայկալ-Ամուրյան մայրուղով:

ԲԱՄ-Ի ԱՌԱՋԻՆ ՈՒՂԵԲԵՌԸ ԿԼԻՆԻ ՆԱՎԹԸ:

Հզոր նավթամուղով դեպի ԲԱՄ կհոսի տյումենյան նավթը: ՏԱՅՇԵՏ կայարանում, որտեղից սկսվում է ԲԱՄ-ը, նավթը կլցնեն ցիստեռնների մեջ, և այն կմեկնի արևելք: Ամեն տարի ԲԱՄ-ով միլիոնավոր տոննա նավթ է տեղափոխվելու:

Ամուրի Կոմսոմոլսկից նավթը նավթամուղով կհոսի դեպի խաղաղօվկիանոսյան նավահանգիստները: Այստեղ նրան են սպասում օվկիանոսային գերհզոր հեղուկանավեր, որոնք սիբիրյան նավթը ծովերով և օվկիանոսներով կհասցնեն աշխարհի տարբեր երկրներ:

Իսկ Տայշետում կկառուցվեն գործարաններ, որպեսզի տեղում վերամշակեն նավթը, բենզին, ռետին, կաուչուկ, պլաստմասսաներ, արհեստական գործվածքներ, նաև... խաղալիքներ կպատրաստեն:

ԲԱՄ-Ի ԵՐԿՐՈՐԴ ՈՒՂԵԲԵՌԸ ԱԾՈՒԽՆ Է:

Հարավային Յակուտիայում այն արդյունահանվելու է բաց հանքերից: Հանքերի մոտ կըծնվի հարմարավետ ավան և



երկաթուղային կայարան ԲԵՐԿԱԿԻՏԸ: Եվ լիովին հնարավոր է, որ այս կայարանից ո՛չ միայն նավթ, այլև տեղի գործարաններում ձուլված մետաղ տեղափոխեն:

Չարա կայարանը կբարձրանա հենց այն կարմիր՝ Ուդոկան լեռան ստորոտում: Այստեղ նոր քաղաք է կառուցվելու: Ուդոկանի քիմիա-մետաղամըշակման կոմբինատից այստեղի քիմիական գործարանների համար հումք կբերեն:

Տայգայում, ԲԱՄ-ի երկարությամբ, կբարձրանան փայտամշակման գործարանների մասնաշենքերը: Այստեղից ԲԱՄ-ով իրենց ուղին կսկսեն թուղթը, կահույքը, շինափայտը, նըրբատախտակը:

Կանցնի ընդամենը մի քանի տարի և ԲԱՄ-ի քարտեզների վրա կհայտնվեն տասնյակ նոր օղակներ՝ նոր քաղաքներ, էլեկտրակայաններ, հանքավայրեր, ածխահանքեր, փայտամշակման գործարաններ...

Եվ ԲԱՄ-ի քարտեզը կդառնա մեր երկրի պատմության մի նոր էջը՝ սովետական ժողովրդի աշխատանքային սխրագործության մասին պատմող նոր էջը:



digitised by A.R.A.R.@




*ԽԱՐՐԻ ՅԸԳԻՍԱԼՈՒ*

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

*Խնձորի մեր հին այգում ամեն մեկս ունեինք մեր խնձորենին. տատիկը, մայրիկը, հայրիկը, երեխաները: Ամեն ծնվող երեխայի համար մատղաշ ծառեր էին տնկում: Հիմա դրանք բոլորը վաղուց արդեն մեծ ծառեր են, ինչպես որ մեծ ենք մենք:*

*Խնձորենիները տարբեր սորտերի էին: Ոմանց պտուղը քաղցր էր, ուրիշներինը՝ թթու, քաղցրաթթվաշ, այլուրաշատ, կային նաև այնպիսիները, որոնք պետքական էին դառնում, եթե սառեցնում էին ձյունակույտերի մեջ, իսկ հետո քարե վառարանի վրա տաքացնելով ետ բերում:*

*Բայց ամենից ավելի հիշողությանս մեջ մնացել են մայրիկի խնձորենին և նրա խնձորները: Դա մի վիթխարի, մեր տնից բարձր ծառ էր, հյութ, անհարթ բնով, ճյուղերը մինչև գետին էին կախվում: Իսկ խնձորներն այնպիսին էին, որ ոչ մի ուրիշ խնձորենու վրա չի լինում: Եվ նրա տակ միշտ ստվեր էր:*

*Գարնանը, ծաղկման շրջանում, մայրիկի խնձորենին հարսի էր նմանվում, ծաղկաթերթիկները քամուց պար էին բռնում շուրջը, նուրբ բույրը տուն էր թափանցում, լցնում բակը, և մեղուները պարսերով պտտվում էին խնձորենու շուրջը: Ամբողջ այգին ծաղկի մեջ էր, մայրիկի խնձորենու ճյուղերը նայում էին ներս՝ սենյակ, և նրա ծաղիկների լույսը կարելի էր համեմատել գուցե միայն նոր կթած կաթի փրփուրի կամ ժանյակի գործվածքի հետ:*

*Դեռ ամառվա եռուն շրջանում մենք ճաշակում էինք առաջին խնձորները, նրանք, որ որդնում, թափվում էին:*

*Մինչև տարեկանի կալսելը մայրիկի խնձորենու խնձորներն արդեն հասնում էին: Կալսելու համար շատ վաղ էինք վեր կենում: Բայց ծանր ու կեղտոտ աշխատանքն սկսելուց առաջ, մայրիկը գնում էր ցողաշաղախ այգին և բոլորի համար մի կամբյուղ խնձոր էր բերում իր խնձորենուց: Կարմիր, թափանցիկ, մուգ սերմերով, որոնք ասես լողում էին հյութեղ մեղրահամ միջուկի մեջ, խնձորներն ուղղակի հալվում էին մեր բերաններում, և թվում էր, թե երբեք չես կշտանա դրանցից:*

*Այն տարիներին, երբ բոռերը շատ էին լինում, ծառն ուղղակի բվվում էր նրանց և ձիաքոռերի ձայներից: Սուր խայթերով, այդ անամոթները խրվում էին խնձորի մեջ, հասնում միջուկին և վայելում: Բավական է մոտենայինք խնձորենուն, սկսում էին ըսպառնալից պտտվել օդում, աի պատճառելով մեզ:*

*Թռչուններն էլ էին հասկանում մայրիկի խնձորենու գինը: Թռչում գալիս էին առավոտյան, երբ օրը նոր էր բացվում և մենք քնած էինք լինում կամ տավարն էինք արածեցնում, և տանը խաղաղություն էր տիրում: Կեռնեխները կտցահարում էին խնձորները, խոր անցքեր թողնում նրանց մեջ: Ծակում-հանում էին սերմերը և ծակոտված խնձորները գետին թափում, փչացնում ու վատնում:*

*Եթե որևէ մեկին հաճելի բան էինք ուզում անել, հյուրասիրում էինք խնձորով.*

*— Փորձի՛ր, սա մայրիկի խնձորներից է:*

*Ամենաթափանցիկները տանում էինք տատիկին. նա միայն մի ատամ ուներ: Իսկ տատիկն էլ իր հերթին դրանք հավաքում էր մեկ համար. ամենալավ խնձորները նրա ծոցն էր խցկում, ով անպայուսներն էր տանում արածեցնելու: Իսկ աշնանը դնում էր մեր դպրոցական պայուսակների մեջ:*

*Երբ մեծ երեխաներին ուղարկում էին քաղաք սովորելու, ճանապարհի համար մի արկղ խնձոր էին տալիս: Արդեն չափահաս մարդիկ դարձած, երբ սովորում էինք ինստիտուտում, տնից ստանում էինք ծանրոցներ, որոնց մեջ տնական հաց էր լինում և կարմիր խնձորներ: Եվ այդ դեպքում ճամպրուկի մեջ, պահարանում, հանրակացարանի սենյակում երկար ժամանակ մնում էր խնձորի բույրը, մի բույր, որն ընդմիշտ հայրենի տան հետ էր կապված:*

*Տանը շատ բան է փոխվել այժմ. նոր սերունդ է աճել, այդ սերունդն այլ աշխատանքով ու հոգսերով է ապրում, մարագի դիմաց մամռակալած կտուրի տակ սպիտակին է տալիս բարձր տունը:*

*Իսկ հին խնձորենին դեռ կա, ավելի է աճել ու տարածվել, ավելի ճյուղատարած է դարձել, ճյուղերը փռվել են տան ծղոտածածկ կտուրին, խնձորներն առաջվա նման համեղ են և... առաջվա նման մայրիկի խնձորենուց:*

*Հասուն մարդ դառնալուց հետո միայն հասկացա, որ մեր ընտանիքում այդ խնձորենին միշտ մայրիկինն է եղել, դեռ տատիկի մոր ժամանակներից:*

*Ծառը համարվում էր մայրիկինը, իսկ խնձորները միշտ երեխաներին էր բաժին ընկնում:*

*Թարգմ. Վ. ԵՍԱՅԱՆԻ*



digitised by A.R.A.R.@

## ՔԱՄԻՆԵՐԸ

ԱՐՇԱՎԻՐ ԱՎԱԳՅԱՆ

Խորհրդավոր գիշերվա մեջ
տերևները սարսռում են
աստղափրփուր քամիներից:
Քամիները
երազներ են տեղափոխում
դաշտից անտառ
և անտառից դեպի երկինք:
Երկնքի մեջ
անմեկնելի գաղտնիքի պես
թրթռում են աստղ ու լուսին:

Խորհրդավոր գիշերվա մեջ
խրճիթները բոցկլտում են
երազների շատությունից:

Երազները
թռչունների երամի պես
ճախրում են վեր,
դեպի գիրկը անհայտության:

Անհայտության եզերքներից
ցած են թափվում ասուպները
գաղտնիքի պես անմեկնելի:

Խորհրդավոր գիշերվա մեջ
տիեզերքը սարսռում է
ժամանակի քամիներից:

Քամիները
երազներ են տեղափոխում՝
հողից երկինք
և երկնքից դեպի գիրկը
հավերժության:

Նկ. ՎԱՆ ՀՈՎՆԱՆՅԱՆԻ

## ՔԱՐԱՅԾԵՐԻ ԸՆՏԱՆԻՔԸ

Ես և իմ ընկեր Սարգիսը քարքարոտ լեռնալանջով վեր ենք բարձրանում: Արագածի տափաստանը մնացել էր ներքևում, իսկ մեկնից վերև կրաքարի շեկ ժայռերն են, որ մի միլիոն տարի շարունակ կարող են հումք մատակարարել լեռնաշղթայի այս ծայրին գիշեր-ցերեկ աշխատող ցեմենտի գործարանին:

Այո, այն տարիներին քարայծերը շատ հեռու չէին բնակվում այդ գործարանից: Դանդաղ բարձրանում ենք դեպի նրանց պնդոցները, բայց միտք չունենք անհանգստացնելու այն անմեղ խոտաճարակներին: Ուրիշ նպատակ ունենք: Արմաշից տեղեկություն ենք ստացել, որ այդ լեռներում հովազներ են երևացել, նրանց ենք փնտրում՝ քարայծ ու վայրի ոչխար հոշոտող այդ գազաններին:

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ



Քարերից բռնելով, զգուշությամբ դուրս եկանք լեռնամատի թիկունքը և մի թփի ետևից գաղտագողի նայում ենք հաջորդ ձորին, հայացքով տնտղում ենք ծուռումուռ մեկնված յուրաքանչյուր քար, որի վրա կարող է պառկած-սակված լինել հովազը:

Բայց հովազի փոխարեն քարայծերի մի ընտանիք հանդիպեց մեզ՝ խոշոր կոտոշներով մի նոխազ, սրածայր ու փոքր եղջյուրներով իր նազելի տիկինը և երկու ուլիկ: Ի՜նչ բանի էին: Խելակորույս վազում էին գորշ ու խճոտ լանջով. իրենց հետապնդող գայլերից էին փախչում...

Այլևս թաքնվելու տեղը չէր, դուրս եկանք թփի ետևից և մեր ամբողջ հասակով մեկ կանգնեցինք մի մեկնված քարի վրա: Քարայծերը մեզ նկատեցին և շուռ եկան ու շնչակտուր դեպի մեզ են գալիս...

— Հասկացա՞ր,— հարցրի ընկերոջս,— հույները մեզ վրա է...



digitised by A.R.A.R.@

— Հասկացա,— ու նրա կարմիր, առողջ թշերին գոհունակության ժպիտ խաղաց:

Փախստականների խումբը արագությամբ մոտենում է: Այն սրատես գայլանները, անշուշտ, վաղուց են նկատել մեզ, բայց սովը, ագահությունը թե որսորդական կիրքը այնպես է համակել նրանց, որ ահ ու ամոթ մի կողմ թողած՝ միայն իրենց զոհերին հասնելու մասին են մտածում: Գայլը, իհարկե, քարայծի վարքը չունի, և ծնողները վաղուց փրկված կլինեին, եթե ուլիկները չխանգարեին. ծնողները մեծ-մեծ թռիչքներով առաջ էին նետվում, ապա մի պահ դանդաղում կամ կանգ առնում, որ ուլերը հասնեն իրենց:

Գայլերն, իհարկե, նկատեցին, որ մենք չոքեցինք և մահաբեր փողերն առաջ մեկնեցինք: Այդ փողերը նրանք լավ են ճանաչում, բայց նրանցից մեկն արդեն հասնում է ետ մնացած ուլին, նրա փափլիկ միսն արդեն այնպիսի գրգիռ ու աղմուկ է գցել նրա ամենակուլ ստամոքսը, որ ճակատին գնդակ արձակես՝ ետ չի կանգնի իր ծուռ մտադրությունից:

Ընկերս կրակելու համար հարմար դիրք էր ընդունում, իսկ ես հետևում էի, թե այդ կենդանիներից ով ինչպես կվարվի այս ողբերգական ժամին:

Գայլերից մեկը վրա հասավ և հենց առաջ ցատկեց, որ բռնի ետ մնացող ուլին, այդ պահին նոխազը ջուռ եկավ և իր ահագին եղջյուրներով հարվածեց գայլանի բաց երախին... Սա կաղկանձելով ետ շրջվեց (երևի ատամները փշրվել էին...), իսկ ընկերը վրա հասավ, վեր ցատկեց ու կախվեց նոխազի բաշից:

— Ետապի՛ր, կրակի՛ր...

Ընկերոջս եմ դիմում, որովհետև վստահ չեմ իմ հմտությանը: Սարգիսն անվրեպ կրակող է, նրա մեջ արդեն եռում է որսորդական կիրքը՝ վայրության հետ խառնված, նշան է բռնել տագնապահար, շունչը պահել է, բայց ձգանը չի քաշում: Ես հասկանում եմ նրան. այծ ու գայլ իրար են շուլալվել, ինչպե՞ս կրակի, որ անվնաս մնա ընտանիքի հայրը: Իսկ սա ձերբազատել է, գալարված դես-դեն է շպրտում իր բաշից կախված գայլանին: Վերջապես նրան քարին խփեց, պոկեց իրենից, ետ-ետ գնաց, որ թափ առնի, այդ պահին ականջիս տակ որոտաց ընկերոջս հրացանը: Գայլը ծուլ եղավ, գետնովը խփվեց, ոռնաց ու կաղկանձելով փախավ դեպի ձորը, հասկացանք, որ վիրավոր է: Այծերը մի պահ շփոթված մնացին:

— Կեցցե՛ս, Սարգի՛ս, ստացի՛ր մրցանակդ,— ուրախ բացականչեցի ես՝ ջրամանն իրեն մեկնելով, այդ անջուր ու պապակ լեռներում հոգնած որսորդի համար ավելի մեծ պարգև չկա, քան մի բաժակ երևանյան ջուրը:

— Սպասի՛ր... սրիկա՜ն...— գոչեց Սարգիսը, ջրամանս դեն հրեց ու նորից չոքեց: Բայց այս անգամ արդեն ուշացած. առաջին գայլը հարվածից ուշքի գալուց հետո, գաղտագողի մոտեցել էր խմբին և երբ ջրամանս մեկնեցի, նա արդեն մի քանի քայլի վրա էր իր զոհերից: Մինչ ընկերս նշան կբռներ, գայլանն առաջ ցատկեց և լափեց ուլի աղեկտուր բղավոցը:

Այդ բղավոցը տեսանք. հայր քարայծը, որ կարծես կրակոցը չէր էլ լսել, գլուխը սպառնագին խոնարհած՝ վրա թռավ գայլանին: Նրա հարվածն ու գնդակի հարվածը միասին տեղացին: Գայլանը ջուռ եկավ և նկատելի էր, թե ինչպես է ոտքերը ջղաձգորեն շարժում:

Իսկ մայր այծը պտտվում էր իր վիրավոր զավակի շուրջը, մկկում էր տխրալի:

Երբ նա մռմռքելով պտտվում էր իր վիրավոր ուլիկի շուրջը, մյուս ուլիկը վազում էր հետևից, մտնում էր մոր ոտքերի արանքը, փորի տակը. երևի պի ուներ հոգեվարքի մեջ ծնգծնգացող այն գայլանից: Այդպիսի ահարկու տեսարանի նա ներկա չէր եղել իր փոքրիկ կյանքում. երախները լայն բացած գայլաններ... իր հոր մոլեգին կռիվը նրանց դեմ... ապա երկոտանի արարածներ, որ լեռնամատի թիկունքից որոտում են իրենց վրա՝ սանից էլ ահարկու... Ինչո՞ւ այսպիսի վատ բաներ եղան, ախր օրը մեղմ էր, արևն այնպես ղուրեկան էր տաքացնում, իսկ իրենք այնպես խաղաղ էին ու երջանիկ...

— Գնանք,— լսվեց ընկերոջս ձայնը,— գնանք մեր որսի կողմը...

Նա էլ էր թախծոտ՝ ուրախ և կատակասեր այդ մարդը:

Մենք լուռ իջնում էինք լեռնամատից, նրանք նույնպես ցած էին իջնում դեպի ձորը: Ինձ թվում էր, թե իջնում են հանդիսավոր, լուռ ու մտախոհ: Առջևից ընթանում էր ընտանիքի հայրը: Մայր այծը երբեմն կանգ էր առնում ու ետ նայում. վերևում իր բալիկն էր անշարժ մեկնված... Կենդանի մնացած ուլը պատսպարվում էր մոր փորի տակ և այնտեղից ահով նայում էր աշխարհին...

Նկ. ՀԱՅԿԱԶՈՒՆ ԽԱՉԱՏՐՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@



# ԹԵ ՀԱՎՔ ԼԻՆԵԻ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

Հավք էլ լինեի բնության ծոցում,
Հայրենի հողը պիտի երգեի,
Երբ հատիկները աչքերն են բացում
Ակոսների մեջ գարնան հերկերի:

Պիտի երգեի դալալյով անուշ՝
Ջրերի լեզուն, ջրերի ճամփան,
Որ վտակներով ձկներ են տանում
Դեպի լճերի գոլյակները պաղ:

Պիտի երգեի հովերը ծփուն,
Պիտի երգեի խնդությամբ վերին,
Որ գագաթների արցունքն են սփռում
Թաշկինակներով ճերմակ ամպերի:

Պիտի երգեի ծագումը լույսի,
Արևի սափորն՝ ամենից առաջ,
Որ փշրվում է լեռների ուսին,
Ու կարկաչում են աղբյուրներն առատ:

Ու կրնգում են դաշտերի վրա
Ալ կակաչների զանգերը կարմիր,
Եվ անձայն, անձայն ղողանջը նրանց
Տանում է իր հետ մայիսյան քամին:

# ՀՐԱՆՏԻԿԸ

ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ

*Քիմիան, աշխարհագրությունը, թվաբանությունը, առհասարակ բոլոր առարկաները Հրանտիկի համար բոլորովին այլ իմաստ ունեին, գիտելիք չէին. դասագրքեր չէին, դաս չէին, այլ մի տեսակ տարրալուծված, փոխներթափանցված մի ամբողջություն էին, շրջապատի, կյանքի մի արտահայտությունը:*

*Լավ սովորող չէր, հազիվ-հազիվ «միջակներ» էր ստանում: Առաջին դասարանում գլուխն էր մտել «Արա՛, սա՛ սար» նախադասությունը, երկրորդում՝ ոտանավորի մի քառյակ, երրորդում՝ մի այլ բան, չորրորդում՝ «Նախադասության այն անդամը, որը... կոչվում է ենթակա» սահմանումը, իսկ ավելի բարձր դասարաններում՝ բույսերի, կենդանիների անուններ ու աշխարհագրական տեղանուններ էր տեղին ու անտեղի հոլովում, պատմության դասը պատասխանելիս՝ քիմիական տերմիններ էր մեջբերում: Ավելի ճիշտ՝ իրենք իրենց էին մեջ ընկնում:*

*— Ենիսեյ գետը պատկանում է ողնաշարավորների դասին:*

*Ինքը չէր ծիծաղում, բայց գիտեին բնավորությունը, միշտ սպասում էին նրանից անսպասելի բաներ:*

*Դասընկերոջ մայրը հրավիրված էր դաս լսելու: Անահիտ էր անունը, եկավ, նստեց որդու դասարանում, երկու րոպեում նրա անունը դարձավ Անհիդրիդ:*

*Անելն ու կպչելը մեկ եղավ:*

*Այդ կնոջը նայում ես՝ մազերը չեկ, գզգզված, դեմքը արևից խանձված, ձեռքերի արմունկները ծալած՝ միշտ պատրաստ արագորեն որևէ գործով զբաղվելու, աչքերն անհանգիստ, չնայած պարզ անհեթեթությանը, թվում է՝ ահա դեմդ կանգնած է իսկական անհիդրիդ:*

*Անունը կպավ ու տարածվեց: Անհիդրիդ մորաքույրը կռիվ գնաց Հրանտիկենց տան վրա, ինչպես գյուղում են կանայք կռիվ գնում. գնաց, Հրանտիկենց տնից կանգնեց մի կիլոմետր հեռու, մի ոտքը առաջ, մյուսը ետ դրած, ձեռքը ճակատին՝ դուրս կանչեց նրա մորը, հասկացրեց, որ ուզում է կռվել, թող մյուսն էլ որևէ տեղ դիրք բռնի:*

*— Աղջի՛, մի դո՛ւրս արի:*

*Ու երկու կնիկ, ամառվա կրակ կեսօրին, գյուղով մեկ բղավելով, ծոր տալով, ձեռքին-ոտքին անելով, մեկը մի բլրի վրա, մյուսը մյուս բլրի վրա, իրարից ահագին հեռու, սկսեցին կռվել՝ միմյանց անվանարկելով, եղած-չեղած թերությունները իրար երեսի տալով:*

*— Իմ ի՞նչն է անհիդրիդ, աղջի՛,— գոռում էր Անհիդրիդ մորաքույրը, մեկ աջ, մեկ ձախ կողքը ցույց տալով,— որտե՞ղս է անհիդրիդ, աղջի՛: Մի քե՛վ նայիր, քե՛վ...*

*Հրանտիկի մայրը լուրջ-լուրջ պաշտպանում էր որդուն. ինչ էլ որդին աներ, նա պիտի պաշտպաներ: Լուրջ-լուրջ ապացուցում էր, որ մյուսը իսկական անհիդրիդ է:*



digitised by A.R.A.R.@

— Աղջի՛,— բղավում էր նա իրենց բակից երկու թաղ այն կողմ, ոտքի մեկը առաջ, մյուսը ետ դըրած,— աղջի՛, բա դու էլ որ Անհիդրիդ չես, էլ ո՞վ է Անհիդրիդ: Հենց իսկական Անհիդրիդ ես, որ կա՜ս...

Երևի այս պատկերացմամբ ևս անհիդրիդը որոշակի, առարկայական ինչ-որ բան էր, և այդ պատկերացումը շատ տեղին համընկնում էր մյուսի կերպարանքին:

Անունը կպավ, ամրացավ, հաստատվեց: Անահիտը մոռացվեց, մնաց Անհիդրիդը. ամուսինը սրահում ընթրելիս կանչում էր հոգնած-հոգնած.

— Աղջի Անհիդրի՛դ, աչքդ որտե՞ղ է, անտեր հորթը կովի տակն է ընկել, մի ե՛տ քաշի:

Մեկը, մի մարդ, նստում էր պատի տակ, ձեռնափայտով հողը բրբրելով, դեսից-դենից պատմություններ էր անում, եղած-չեղած բաներ: Անունը՝ Գրիգոր: Բայց Հրանտիկն ասել էր՝ Ջիմկիմով: Բարձր չէր ասել, ցածր, ի միջի այլոց, չպարտադրելով, նշանակություն չտալով, բայց մեկն էլ լսեր՝ բավական էր: Սա էլ կպավ: Ու երբ ուզում էին իմանալ՝ ո՞րը, գյուղում երեք Գրիգոր կար, ասում էին.

— Որ Գրիգորը, Ջիմկիմո՞վ Գրիգորը:

Հրանտիկը հայտնի էր մանավանդ իր «աշխարհագրություն իմանալով»: Բոլորն ասում էին.

— Հրանտիկը լավ աշխարհագրություն գիտի: Այդ մեկը որ՝ լավ գիտի:

Երբ նա պատմում էր կորած հորթը փնտրելու պատմությունը, այսպես էր ստացվում.

— Հա, ուրեմն, չորս օր է ման ենք գալիս: Հրո երկրից մինչև Բորնեո կղզին ոտի տակ եմ տվել, մեր հորթին եմ ման գալիս՝ հորթ չկա: Բարձրացել եմ Էվերեստի գագաթը, աջ եմ նայում՝ հորթ չկա, ձախ եմ նայում՝ հորթ չկա: Ի՞նչ հորթ, ի՞նչ կով, ի՞նչ գառ, ոչ մի խոտակեր ողնաշարավոր անասուն չի երևում: Ստիպված մեծ դժվարությամբ անցել եմ Դարդանելի նեղուցը, Լաբրադորի ձորով դուրս եմ եկել, այստեղ, հրես, Բայունց Արշակ-իբն-Կոլումբոսը իրենց էշին նստած՝ առաջս ելավ: Բարև՝ բարև: Ի՞նչ կա, ի՞նչ չկա: Հարցրեցի, սա թե՝ ձեր հորթը ես տեսել եմ Ամերիկան հայտնագործելիս, Լոնդոնի արվարձանում, որտեղ ապրում են չորս միլիոն մարդ, չհաշված մերձակա բանվորական ավանների բնակիչները: Այստեղ հակառակի նման՝ սկսեցին մուսսոններն ու պասսատները փչել, ճանապարհը կորցրի: Ճանապարհը կորցրի, գնացի-գնացի, հասա չհայտնաբերված մի կղզի: Պապուասներին հարցնում եմ, թե՝ ականջները սև, փորի տակը սպիտակ հորթ չե՞ք տեսել: Թե՝ այդպիսի մի հորթ տեսել ենք Տասմանիա կղզու հարավարևելքում...

Դա հայտնի պատմություն էր, միշտ պատմել էին տալիս: Ի վերջո նա հորթը գտնում էր Հինդուկուշի լեռներում, և լսողները գիտեին, որ Հինդուկուշը մո-

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ



## ԹԵՎԱՎՈՐ ԽՈՍՔԵՐ

### ԻՐ ԱՐՇԻՆՈՎ ՉԱՓԵԼ

Կուլտուրական երկրներում երկարության և կշռի չափերը հիմա ունեն մի ընդհանուր, օրենքով հաստատված մեծություն, ամենուրեք կան հատուկ հիմնարկություններ, որոնք հետևում են սանտիմետրերի բաժանված քանոնների, կշռաքարերի և այլևայլ չափերի ճշտությանը:

Այդպես չէր առաջ:

Ռուսաստանում վաղուց ի վեր ընդունված էր երկարության արևելյան չափը՝ «արշինը» («արշ» բառը պարսկերեն նշանակում է արմունկ): Սակայն շատ երկար ժամանակ ոչ ոք չգիտեր, թե ճիշտ և ճիշտ ինչ չափ պիտի ունենա այդ «արշինը» և ինչ չափի հետ պետք է համեմատել: Գյուղերում տնայնագործները շինում էին արշիններ և, հասկանալի է, առանձնապես ճշտության ետևից չէին ընկնում: Այդ պատճառով էլ յուրաքանչյուր մարդ վաճառելիս կամ գնելիս խուսափում էր օգտվել անծանոթ արշինից և ամեն կերպ հանձնարարում էր «իր արշինը»: Ընդհակառակը, վաճառականները, որոնք շատ հաճախ փոխում էին արշինները, երբ գնումներից անցնում էին վաճառքի, ունեին և՛ երկարը, և՛ կարճը, ու վայրացած առարկում էին, երբ գնորդը ստուգելու համար հանում էր իր «արշինը»:

Այժմ չափերի այդ խառնաշփոթը վաղուց մոռացված է, բայց «իր արշինով չափել» արտահայտությունը դեռևս գործածում են, որ նշանակում է դատել իր տեսանկյունից, գնահատել ըստ իր ճաշակի կամ հասկացողության:



digitised by A.R.A.R.@

տակա բլրակներն են:

Ամենասիրած արտահայտությունը «Հինդուկուշի լեռներն» էր, երբ ցանկանում էր հեռավորությունն ընդգծել, անպայման ասում էր.

— Այստեղից մինչև Հինդուկուշի լեռները...

Այս ամենը եղել է շատ առաջ, հիմա նա տարիքն առած մարդ է, մազերը ճերմակում են, բայց դարձյալ գյուղում նրան բոլորը Հրանտիկ են ասում: Ամուսնացել է, երեխաներ ունի:

Ամռանը նրան հանդիպեցի դաշտում, տրակտորը հանգել էր, Հրանտիկը չարչարվում էր: Խոսեցինք դեսից-դենից, երեխաներից:

— Մեծս տասն ավարտեց այս տարի,— ասաց նա:— Բայց քաղաք ուղարկելու չէ, չէ՛, չի ընդունվի, կոտորակներից թույլ է:

Թվաբանությունը, երկրաչափությունը, բոլոր մաթեմատիկական առարկաները միաձույլ մի հասկացողություն էին՝ «կոտորակներ»:

Տրակտորն աշխատեց, ծուխ ելավ: Նա բարձրացավ նստատեղին:

Անցյալը, անհոգ ժպտացող, քըմծիծաղ տվող անցյալը վերակենդանացնելու մի փորձ արեցի.

— Գնում ես Հինդուկուշի լեռները վարելո՞ւ, Հրանտի՛կ:

Հոգնած, ուրիշ դարձած, կատակներից, ժպիտներից հեռու, հոգսերով ապրող մարդը լուռ մնաց:

Տրակտորը հռնդաց, ծուխը չքացավ և օրորվելով նստատեղի վրա, նա դուրս ելավ ճանապարհից, ուղղությունը վերցրեց դեպի մոտակա բլրակները:

Գնաց Հինդուկուշի լեռները վարելու:





## ԿԱՎԸ

ՎԱՉԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Մայրս սարերից շեկ կավ էր բերում
Բարակ ճյուղերից հյուսված կողովով,
Թևերը քշտած հունցում էր երկար՝
Հին ու սիրելի մի երգ երգելով:

Անես հալվում էր կավը ոսկեգույն,
Փափկում, բուրում էր բույրով խմորի
Եվ ձեռքերի մեջ մորս ծերացած
Վերափոխվում էր կուժ ու սափորի:

Սափորների մեջ ու այն կժերի
Այսօր էլ ջուր ու կաթ են դեռ լցնում,
Եվ իմ մանկական երազանքներն են
Մորս ձայնի հետ նրանց մեջ ապրում:

### ՄՈՐՓԵՈՍԻ ԳԻՐԿԸ

«Ես կարծում եմ ժամանակն է, որ ճանապարհորդները Մորփեոսի գիրկը գնան»,— հյուրերի հոգնածությունը նկատելով, ասում ՛է Տուրգենևի «Հայրեր և որդիներ» վեպի հերոսներից մեկը: Ի՞նչ «Մորփեոս» է սա:

Որքան էլ տարօրինակ է, այս բառը «մորֆի» դեղի հետ նույն ծագումն ունի. այս դեղը քնաբեր միջոց է, որ ստանում են կակաչի գլխիկներից: Եվ եթե կրկին անդրադառնանք հին հունական առասպելներին, այնտեղ կհանդիպենք մի աստվածիկի, ծանրացած, փակված աչքերով և կակաչներով պարդարված. դա քնի աստված Մորփեոսն է: «Ընկնել Մորփեոսի գիրկը», «հայտնվել Մորփեոսի գրկում» հին ժամանակներում նշանակում էր «քնել»:

Այս բառերի իմաստը չի փոխվել այսօր էլ, միայն թե այժմ մենք դա գործածում ենք մի տեսակ կատակով. իբրև թե «քնելու ժամանակն է» կոպիտ է հնչում, իսկ «ժամանակն է Մորփեոսի գիրկը գնալու» արտահայտությունը շատ քաղաքավարի ու գեղեցիկ է:

### ԱԿՆ ԸՆԴ ԱԿԱՆ, ԱՏԱՄ ԸՆԴ ԱՏԱՄԱՆ

Շատ հեռու անցյալում այս անողոք բառերը արդարադատության ֆորմուլա էին, որ նշանակում էր. «հանցագործը պետք է հատուցի նրանով, ինչով որ տուժել է կռիվը: Ձեռքը կտրողը պետք է զրկվի ձեռքից, ակն (աչքը) հանողի աչքը պետք է հանել»: Ավելի ուշ դա իբրև օրենք գրվեց «Աստվածաշնչում»:

Շատ հին ժողովուրդներ ունեին նման օրենքներ: Ճիշտ է, դեռևս շատ վաղուց «մարմնական պատժից» ազատվում էին դրամով, իսկ դա, պարզ բան է, շահաբեր էր հարուստների համար:

Այժմ այս արտահայտությունը ավելի խաղաղ իմաստ ունի, մեզ մոտ դա՝ «ստացավ ըստ արժանավույն», «ինչ որ ցանես՝ այն կհնձես» ասացվածքների իմաստը:



digitised by A.R.A.R.@

ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# ԲԱՐԻ ԵՐԹ ՆՐԱՆՑ



Գայի անվան դպրոցի մուտքը սովորական է, անսովորը թերևս միջանցքում փակցված ցուցատախտակն է, ճրից ժպտում են տարբեր ազգերի տարազներ հագած պատանիներ ու աղջիկներ: Ցուցատախտակը խոսուն է ու բազմաբովանդակ, ամեն ինչ արված է գեղեցիկ ու խնամքով:

Մտնենք դպրոցի պիոներսենյակը, այստեղ պատերի տակ շարված պահարաններն ասես տարբեր հանրապետություններին նվիրված ցուցափեղկեր լինեն: Դրանց մեջ տեղ գտած գրքերը, նկարներն ու ալբոմները պատմում են այն մեծ բարեկամության մասին, որ ստեղծվել է հայ և տարբեր ազգերի երեխաների միջև:

Ակումբի ¨լավ նախաձեռնությունններն իրենց արձագանքները գտան ո՜չ միայն մեր հանրապետության դպրոցներում, այլև նրա սահմաններից դուրս: Ակումբի անդամները հրավեր ստացան մասնակցելու Արկալաս քաղաքում համամիութենական ինտերնացիոնալ բարեկամության փառատոնին և կատարած ինքնատիպ գործերի համար հուշանվերներ ստացան: Իսկ 1974 թ. աշնանը Գայի անվան դպրոցում կայացավ հերթական փառատոնը: Երևան էին եկել բոլոր հանրապետություններից, Մոսկվայից ու Լենինգրադից: Յուրաքանչյուր դասախան գիտեր, թե ինքը որ հանրապետության պատվիրակությունն է ընդունելու, նախօրոք կազմված էր փառատոնի ծրագիրը: Եղան դասալսումներ, սեմինարներ, հյուրերը ծանոթացան դպրոցի պիոներական ու կոմերիտական կազմակերպությունների աշխատանքներին, այցելեցին Երևանի տեսարժան վայրերը:

Բարեկամությունն օգնում է մոտիկից ծանոթանալ տարբեր ազգությունների երեխաների հետ, նրանց հայրենիքի մշակութային կյանքին, պատմական անցյալին, գիտական ու տեխնիկական նվաճումներին: Նման տեղեկություններ հաղորդող նամակներ շատ կան դպրոցում:

«Սիրելի՛ բարեկամներ,— գրում են Ղրիմի մարզի Սիմֆերոպոլ քաղաքի մի խումբ աշակերտներ,— մենք շատ ենք կարդացել ձեր դպրոցի «Ինտերնացիոնալ բարեկամության ակումբի» լավ գործերի մասին: Խնդրում ենք օգնեք մեզ և խորհուրդներ տաք, թե ինչպես անենք, որ մեր ակումբի աշխատանքներն էլ բովանդակալից ու հետաքրքիր դառնան»:

Գայականները կատարեցին նաև Արխանգելսկի մարզի դպրոցականների խնդրանքը և ուղարկեցին Ալեքսանդր Մատրոսովի մասին լույս տեսած հայերեն գիրքը:

Ակումբի անդամներին առանձնապես հուզեց Բուլղարիայի Վառնա քաղաքի դպրոցական Արմեն Բոյաջյանի նամակը.

«Թանկագի՛ն հայրենակիցներ,— գրում է նա,— մեր դպրոցում կազմակերպում ենք Հովհաննես Թումանյանին նվիրված վիկտորինա-մրցույթ, ուսումնասիրում ենք նրա կյանքը, կարդում նրա անմահ հեքիաթներն ու պոեմները: Խնդրում ենք օգնել մեզ ավելի մոտիկից ծանոթանալու Մեծ լոռեցու կյանքին ու գրական գործունեությանը...»

Ակումբի անդամները այլ ակումբների կողմից առաջադրվող տարբեր հարցաթերթիկներ են լրացնում: Նրանք բոլորից շուտ արձագանքեցին Ռիգայի պիոներդպրոցականների՝ «Հակաֆաշիստական օր» անցկացնելու մասին կոչ-երդումին: Հավաքույթի ժամանակ երդվեցին հավատարիմ լինել Լենինի պատգամներին, ավագների ավանդներին, պայքարել համուն աշխարհի բոլոր երեխաների ապատության և անկախության: Ակումբի անդամներ Արմեն Մեջլումյանն ու Սուսաննա Սառաֆյանը բարեկամական սերտ կապերի մեջ են նաև ԲԱՄ-ի շինարարների հետ: Դարի կառույցի մասնակիցները միշտ գրում են իրենց աշխատանքի ու հանգստի, տայգայի բնակլիմայական պայմանների մասին: Աշակերտներն էլ գրում են Հայաստանի, դպրոցական կյանքի ու գործերի մասին: Նաև գրքեր ու հուշանվերներ են ուղարկում:

Այս տարի Ուկրաինայի Դրագովիչ քաղաքում տեղի կունենա «Ինտերնացիոնալ բարեկամության ակումբների» հերթական փառատոնը: Այդ փառատոնում մեր հանրապետությունը ներկայացնելու են Գայի անվան դպրոցի ակումբի անդամները, որրանք ակտիվորեն նախապատրաստվում են իրենց համար շատ կարևոր իրադարձությանը: Բարի երթ ու նոր նվաճումներ նրանց:

Ա. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ



digitised by A.R.A.R.@



# ՄԱՍՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ ԸՆՏՐԵԼՈՒ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

*Երևանի № 137 դպրոցում առանձնահատուկ տեղ է հատկացվում քիմիային: Պիոներսենյակում տարբեր չափերի սրվակների մեջ քիմիական նյութեր են ցուցադրված և սրվակներից մի քանիսն էլ սպաքներով միացված են իրար: Դա նշանակում է, որ այդ նյութերը կարող են ռեակցիայի մեջ մտնել իրար հետ և արդյունքը կլինի յոդ, սոսինձ, վիտամին ու այլ նյութեր:*

*Դպրոցում քիմիայի նկատմամբ նման հետաքրքրություն ստեղծվեց մի քանի տարի առաջ, երբ վիտամինների գործարանը վերցրեց դպրոցի շեֆությունը: Քիմիագործներն ու աշակերտները հաճախ են փոխայցելում միմյանց:*

*Ահա դասերից հետո նստելով շեֆ-ձեռնարկության ավտոբուսը, աշակերտները մեկնում են գործարան:*

*Ծանոթությունը սկսվում է «Ե» վիտամինի արտադրությունից: Ապակեպատ ու լուսավոր արտադրամասում քիմիագործ Անահիտը տալիս է անհրաժեշտ բացատրություններ.*

*— Ինչպես տեսնում եք, Ե վիտամինի արտադրամասի սարքավորումը նման է ձեր քիմիայի լաբորատորիայի փորձասարքերին: Միակ տարբերությունն այն է, որ այստեղ փորձասարքերը անհամեմատ մեծ են, բազմապան և գործում են ամբողջ օրը, գրեթե առանց ընդհատումների:*

*Արտադրամասի պետի տեղակալ ընկեր Եսայանը հպարտությամբ է խոսում քիմիագործի աշխատանքի մասին, ասում է, որ իր սերը քիմիայի նկատմամբ ծնվել է դեռևս դպրոցական նստարանից:*

*— Մի՞թե իսկապես հետաքրքիր ու ոգևորող չէ այն, որ թեկուզ դպրոցի լաբորատորիայում նյութեր ես խառնում, փորձեր ես անում և հասնում արդյունքի: Իսկ այստեղ՝ արտադրությունում, արդեն իսկա ռեակտորներ են ենթարկվում քո կամքին ու որքան հարուստ գիտելիքներ ունենաս, լավ տիրապետես քո մասնագիտությանը, այնքան լավ է ընթանում քո գործը, այնքան ինքնավստահ ես լինում և մի գեղեցիկ օր էլ քեզ հաջողվում է նոր նյութ հայտնագործել: Քիմիան անսպառ հնարավորություններ ունի, և բանիմաց մասնագետը միշտ էլ հաջողությունների է հասնում, էլ չեմ ասում այն մասին, որ մեծ քիմիկոսների ուժերով այդ գիտությունը հսկայական քայլերով է առաջ գնում: Պետք է ասեմ նաև, որ քիմիան կարճատև հրապուրանք ու անվճռականություն չի սիրում: Քիմիագործի նվիրումը պետք է անմնացորդ լինի, իսկ հավատը՝ անսասան:*

# Կենարար ջուր

Այն իրոք գոյություն ունի: Ձեզնից յուրաքանչյուրը կարող է համոզվել դրանում՝ կատարելով այս պարզ փորձերը:

Սովորական հողում երեք կանաչ թուփ տնկեք:

Կարող եք տնկել լոլիկի, մորու կամ հաղարջի թփեր, մի խոսքով՝ ցանկացած թուփ:

Բայց թփերը միմյանցից որոշակի հեռավորության վրա տնկեք (սա շատ կարևոր է):

Մի թուփը ջրեք ջրհորի ջրով:

Երկրորդը՝ հանքային ջրով:

Իսկ երրորդը՝ և՛ սովորական, և՛ հանքային ջրով:

Եթե համբերատար լինեք, հրաշք կտեսնեք:

Իսկ եթե ձեր փորձերի մասին գրեք մեզ, մենք ձեզ կբացատրենք, թե ինչ է տեղի ունեցել:

Եվ որպեսզի օգնենք ձեզ այդ կենարար ջուրը ձեռք բերել, հիշեցնում ենք, որ հանքային ջուրը վաճառվում է բոլոր պարենային խանութներում: Խնդրեք ձեր ծնողներին մի քանի շիշ հանքային ջուր գնել այս փորձի համար: Համոզված ենք, որ ձեզ չեն մերժի:

Առաջարկում ենք ևս մի հետաքրքիր փորձ:

Բայց այս փորձը կատարելու համար պայտաձև մագնիս է անհրաժեշտ:

Սովորական ջուրը անցկացրեք մագնիսի բևեռների միջով: Այնուհետև այդ ջրով ջրեք թփերը:

Ահա և ամբողջը: Ուրիշ ոչինչ չի պահանջվում:

Եվ նորից, համոզված ենք, ձեր աչքի առաջ զարմանալի երևույթներ տեղի կունենան:

Ինչպիսի՞: Առայժմ գաղտնիք է: Եկեք սպասենք մինչև աշուն:



digitised by A.R.A.R.@

# Ի՞ՆՉՆ ԵՍ ԳՆԱՀԱՏՈՒՄ ԸՆԿԵՐՈՋԴ ՄԵՋ

**Մեր ամսագրի դպրոցական բաժնի վարիչ ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆԸ Երևանի №87 դպրոցի մի խումբ բարձր դասարանցիների հետ զրուցելիս, հարցրեց նրանց, թե ով ինչպես է պատկերացնում ընկերությունն ու ընկերասիրությունը: Ստորև տպագրում ենք նրանց պատասխանները և հրավիրում ենք մեր ընթերցողներին մասնակցելու այս հարցի շուրջը սկսված զրույցին, իրենց առօրյայից վերցրած թարմ օրինակներով:**

Գ. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ.— Մինչև իններորդ դասարանը ես շատ ընկերներ ու ընկերուհիներ եմ ունեցել: Ընկերություն էի անում բոլոր նրանց հետ, ովքեր դրա կարիքը ունեին կամ փորձում էին այդպիսին ներկայանալ: Բայց այդ մակերեսային մոտիկությունները շատ կարճ տևեցին: Միայն Նարինեն մնաց, որի հետ սկսած չորրորդ դասարանից ընկերացանք և տարեցտարի այն ավելի ամրապնդվեց: Այդ ընկերությունը անհրաժեշտ ու օգտակար եղավ երկուսիս համար էլ: Երկուսս էլ ավելի լավ սովորեցինք ու գերազանցիկներ դարձանք:

Ես հաճախ եմ ինքս ինձ հարց տվել, թե ի՞նչն եմ գնահատում Նարինեի մեջ, ինչո՞ւ դասարանի բոլոր աշակերտներից միայն նրա հետ եմ շատ մտերիմ: Նրա անաչառ ու հոգատար ընկեր լինելու օգտին շատ օրինակներ եմ մտաբերել և ուզում եմ դրանցից մեկի մասին պատմել:

Ութերորդ դասարանում ռուսաց լեզվի ուսուցչուհին իմ տարեկան թվանշանը «չորս» նշանակեց, ես դրանով զրկվում էի միջնակարգը մեդալով ավարտելու հնարավորությունից: Պարզ է, որ դա ինձ համար ծանր հարված էր, շատ էի վշտացել ու չգիտեմ, թե ինչ ընթացք կունենար իմ հետագա ուսումն ու առաջադիմությունը, եթե չլիներ Նարինեն: Նա շատերի նման սփոփանքի մաշված ու ավանդական խոսքեր չէր ասում, այլ ինձնից ավելի էր տառապում: Տեսնելով այդ, ինձ մոռացած, ես աշխատում էի սփոփել նրան, ասելով, որ կարևորը գնահատականը չէ, այլ՝ գիտելիքը, որ ավելի շատ կպարապեմ (այդպես էլ անում եմ) ու միասին ուսանողներ կդառնանք:

Ն. ԹՈՎՄԱՍՅԱՆ.— Գայանեն ու ես դպրոցական տարիների ընթացքում շատ էինք վիճում, բայց եթե ես սխալվում էի, նա շատ մեղմ ու զգույշ էր դիտողություն անում, ուղղում իմ սխալը: Անցյալ տարի նա մեր դպրոցի կոմերիտական կազմակերպության քարտուղարն էր: Երբ որևէ միջոցառում էր կազմակերպում, այնպես էր խորհրդակցում մեզ հետ, որ չէր երևար, թե կատարվելիք միջոցառումը իր մտահղացումն է: Բացի այդ, նա բազմաթիվ անգամ մասնակցել է շրջանային, քաղաքային ու հանրապետական օլիմպիադաներին և քիմիայի գծով միշտ դիպլոմների արժանացել, բայց չի մեծամտացել, այլ ավելի բարի ու ընկերասեր է դարձել:

Անցած ամռանը որոշեցինք մեր դպրոցական վերջին արձակուրդը միասին ճամբարում անցկացնել: Մեկնեցինք հանգստանալու: Մի քանի օր անց նկատեցի, որ Գայանեն նման չէ իրեն: Միանգամից տրխրել ու մռայլվել է: Երբ հարցնում էի պատճառը, փորձում էր շեղել խոսակցությունը կամ աշխատում էր ուրախ ձևանալ, բայց ես զգում էի, որ, այնուամենայնիվ, ինչ-որ բան թաքցնում է: Մի քանի անգամ էլ նրան ուղղակի բռնացրի արտասվելիս: Միայն հերթափոխի վերջում հեռվից ու զգույշ սկսեց պատմել ինձ վերաբերող մեծ դժբախտության մասին, որին թեև ես սպասում էի, բայց նա կարողացավ իրեն ճնշելով, տառապելով, թաքցնել ինձանից, որպեսզի ես կարողանամ հանգստանալ:

Ա. ՀՈՒՄՆՈՒՆՑ.— Մեր դասարանի գերազանցիկները նման չեն տասի Ա դասարանի գերազանցիկներին: Միշտ քթները վեր ցցած են շրջում և ոչ մի բանով չեն ուզում օգնել ետ մնացողներին: Ես միջակ եմ սովորում, բայց շատ եմ կարդում հատկապես պատմության ու աշխարհում կատարվող իրադարձությունների վերաբերյալ նյութեր: Երբ զրույցների կամ դաս պատմելու ժամանակ լրացուցիչ բաներ եմ ասում իմ կարդացածներից, այդ գերազանցիկները չարախնդում են, ասելով. «Եթե այդքան ընդունակ ես, ինչո՞ւ մյուս առարկաներից «երեքներ» ես ստանում»:

Ես միշտ ցավով մտածում եմ, որ դպրոցից հետո իմ դասընկերներից ոմանց հետ ընդհանուր ոչինչ չենք ունենա և փողոցում հանդիպելիս՝ երևի օտարի նման անցնենք միմյանց մոտից: Սակայն կուզենայի, որ այդպես չլիներ, կուզենայի սխալված լինել և, մինչև դպրոցն ավարտելը, ճիշտ հասկացած ու հասկացված լինեի իմ դասընկերներից:

Գ. ՀԱԿՈԲՅԱՆ.— Հիշում եմ այսպիսի դեպք: Գարեգինը կոպտել էր Սուսաննային: Վերջինս առանց երկար-բարակ մտածելու բերել էր դրսի իր ընկերներին՝ Գարեգինի հետ «հաշիվ» մաքրելու: Եթե ժամանակին չիմանայինք ու չմիջամտեինք, երևի շատ լուրջ ու տխուր վերջաբան ունենար այդ միջադեպը: Երբ դասարանում այս առիթով խոսում էինք Սուսաննայի հետ, բացատրում, որ դրսից տղաներ կանչելու փոխարեն, կարող էր դիմել դպրոցի կամ դասարանի կոմերիտական կազմակերպությանը կամ խորհրդակցեր որևէ մեկիս հետ, նա սկզբում չէր հավատում, որ դասարանը ի վիճակի կլիներ կարգի հրավիրելու այդ կամակոր տղային, սակայն վերջում համոզվեց: Հատկա-



digitised by A.R.A.R.@

պես այդ միջադեպը բավականին կգաստացրեց շատերին, դասարանում ընկերություն ու ընկերասիրություն հասկացողությունը սկսեց ճիշտ ըմբռնվել:

Հ. ՂՈՒԿԱՍՅԱՆ.— Ես ուզում եմ դերասանուհի դառնալ, սակայն տանը այդ մասին լսել չեն ուզում: Երբ ընկերուհուս՝ Գայանեին պատմեցի, նա ինձ համոզեց, որ ես դա մեծ ողբերգություն չդարձնեմ ինձ համար, որ առայժմ կարևորը լավ սովորելն է, դպրոցն ավարտելուց հետո հեշտ կլինի կողմնորոշվել: Գայանեն միայն այդքանով չբավարարվեց, հետագայում ես իմացա, որ նա ինձանից ծածուկ բանակցություններ է վարում նաև ծնողներիս հետ և, ինչպես ասում են, կարծես իմ դերասանուհի դառնալու դեմ եղած պատնեշը սկսում է երերալ:

Գայանեի մեջ գնահատում ու սիրում եմ կամքը, սկզբունքայնությունը, ազնվությունն ու հատկապես կազմակերպչական մեծ կարողությունը: Դպրոցում, բոլորից գաղտնի, պիոներական դասարանին Նոր տարվա հանդեսի էր նախապատրաստել և շատ լավ անցկացրեց:

Մ. ՄԿՐՏՉՅԱՆ.— Ես հոգեկան մեծ բավականություն եմ ստանում մեր դասարանի Էդիկի ընկերությունից: Ես բնավորությամբ տաքարյուն ու բռնկվող էի, իսկ նա լրջախոհ, խիստ հավասարակշռված ու արագ կողմնորոշվող է: Այժմ, երբ վայրանալու կամ վիճելու առիթ է լինում դպրոցում թե դրսում, անմիջապես հիշում եմ նրան և զսպում ինձ:

Անցյալ տարի, մի առիթով փախել էի դասից, հարցըս լսելու էին կոմերիտական ժողովում: Իմ որոշ ընկերներ խրախուսում էին իմ վատ արարքը, իսկ ժողովի ժամանակ քննադատում էին ինձ: Էդիկը, որին ես դեռ մտահոգված ու հուզված չէի տեսել, ինձնից ավելի էր անհանգստանում: Ժողովը իմ նկատմամբ խիստ չվարվեց, որովհետև դա իմ առաջին կարգապահական խախտումն էր: Սակայն մինչ այդ էլ ես ինձ միայնակ ու լքված չէի զգում, որովհետև այդ ծանըր պահին Էդիկն ինձ հետ էր և ես միշտ զգում էի իսկական ընկերոջ ու մարդու նվիրված, հոգատար վերաբերմունքն իմ նկատմամբ:

Էդիկի հետ մեր ընկերությունը միակողմանի չէ, ես էլ ինչ կարող եմ՝ անում եմ նրա համար, փոխադարձաբար մենք լրացնում ենք միմյանց: Եվ արդյունքն այն է, որ երկուսս էլ լավ ենք սովորում, ստեղծվող դժվարությունները հեշտությամբ ենք հաղթահարում, իսկ, որ ամենակարևորն է, միմյանց համար պատրաստ ենք ամենամեծ զոհողությունների գնալ:

# «ԱՆՎՃԱՐ» ՄԻԼԻԱՐԴՆԵՐ

Վ. ՍՏՈՐՈԺԵՆԿՈ

*Ես ունեմ ծանոթ աշակերտներ, որոնք կարող են ավելի լավ պատմել Մարսի կենսապայմանների մասին, քան Երկրի: Եվ կիբեռնետիկայի մասին նրանք ավելի բան գիտեն, քան էկոնոմիկայի՝ մի գիտության, առանց որի ժամանակակից մարդը չի կարող գոյություն ունենալ:*

*Էկոնոմիկա բառն առաջացել է հունական երկու բառերից՝ օյկոստուն—տնային տնտեսություն, և նոմոս—օրենք: Նշանակում է էկոնոմիկան տնտեսության օրենքն է, մեր մեծ տան՝ ողջ երկրի կյանքի օրենքը: Մեր տնտեսության հիմքը աշխատանքն է: Շատ երեխաներ գիտեն, որ աշխատանքն ամենակարևորն է ամեն մարդու և ողջ մարդկային հասարակության կյանքում: Բայց քչերն են գլխի ընկնում, որ ժամանակակից տնտեսության մեջ յուրաքանչյուր իր ընդհանուր առմամբ իր մեջ ամփոփում է բոլոր մարդկանց աշխատանքը: Որքան ավելի «նախշեա» պատերը, փչացնեա գրքերը, դեն նետեա հացը, այնքան ավելի կհոգնեն իրենց աշխատանքում քո հայրն ու մայրը, անգամ, եթե նրանք ո՛չ ներկարար են, ո՛չ տպագրիչ, ո՛չ հացագործ: Ամեն ինչ փոխադարձաբար կապված է մեկը մյուսին: Այսպիսին է տնտեսության, էկոնոմիկայի օրենքը:*

*Ինչո՞ւ են երեխաները հաճախ փչացնում իրերը: Որովհետև լավ չեն իմանում տնտեսության օրենքը: Սա առաջին պատճառն է: Սակայն կա երկրորդն էլ:*

*Արդյոք դո՛ւք, երեխանե՛ր, ձեր*





digitised by A.R.A.R.@



# ՏԽՈՒՐ ՊԱՏԿԵՐ

Բավական երկար տևեց Երևանի ամենահին, ավանդույթներով հարուստ, Ստ. Շահումյանի անվան № 1 դպրոցի շենքի երեսպատումը: Հիմա, երբ արդեն ավարտվել են աշխատանքները, դպրոցը դրսից շատ գեղեցիկ է և նորակառույցի տպավորություն է թողնում:

Մուտքը բակի կողմից է: Դեռ հեռվից երևում է երևանյան ավանդական ցայտաղբյուրը՝ իր ջրավազանով, որի մեջ, ավա՜ղ, ոչ թե թափանցիկ, կապտականաչավուն, վուլալ ջուր է, այլ աղբակույտ:

Նոր վերանորոգված դպրոցի միջանցքների անկյուններում թափթփված են կեղտոտ փալասներ, կանաչան դույլեր, թղթերի կտորտանքներ, պատերին արդեն հայտնվել են բծեր: Աղբարկղները լիքն են... ծխախոտի մնացորդներով: Բորբոսապատ; խոնավ, ճաքճքված պատը կարծես հիմա-հիմա կփլվի գլխիդ: Եվ զարմանալի է, որ նման պայմաններում, ոմանք իրենց հուզմունքը թղթին հանձնելու փոխարեն, կապույտ թանաքով դեռ ներկը չչորացած դռան վրա գրում են. «Փոթորկվում ես իմ մեջ ծովի նման»:

կյանքում աշխատե՞լ եք ձեր քրտինքով թեկուզ մեկ ռուբլի: Այն մարդիկ, որոնք ավնվորեն վաստակել են դրամ, կզացել են օգտակար գործ անելու հաճույքը, տեսել են առաջին անգամ հայտնըված կոշտուկը ափում, նրանց մեջ դժվար, գրեթե, անհնարին է գտնել «փչացնողների» և «վատնողների»:

Ռիգացի մի աղջիկ՝ Դինա Սկուլյան ճիշտ է նկատել, որ շատերն այսպես են դատում. «Անդրավարտիքը, որն իմն է, իմ մայրն է առել, թանկ արժե: Լույսն իմը չէ, պետական է, էժան արժե, կարելի է չխնայել, պետությունը կվճարի, նա հարուստ է»:

Նրանք չեն հասկանում, որ ինչքան ավելի անխնա, առանց ափսոսանքի ենք վարվում պետական ունեցվածքի հետ, այնքան ավելի է դանդաղում մեր անձնական բարեկեցության գործը: Ահա տնտեսության ևս մի օրենք:

Այժմ դառնանք անվճարության հարցին: Բացի ԱՆՎՃԱՐԻՑ կան բաներ; որոնք մարդկանց վրա չափազանց էժան են նստում, շատ ավելի էժան, քան իրենց իրական արժեքն է: Օրինակ՝ հանգստյան տան ուղեգիրը, տան վարձը, տրամվայով, տրոլեյբուսով, ավտոբուսով երթևեկությունը... Հարց է ծագում, ինչի՞ համար է պետությունը նման նըվերներ անում: Տարվա ընթացքում պետությունը թողարկում է բազմաթիվ տարբեր ապրանքներ: Տարվա ընթացքում թողարկված ապրանքը միշտ բաժանվում է երկու մասի՝ սպառման ֆոնդ և կուտակման ֆոնդ: Ողջ սպառման ֆոնդը բաժանվում է հասարակության անդամներին: Մարդիկ գընում են սնունդ, հագուստ, կահույք, գրքեր և իրենց անհրաժեշտ այլ իրեր: Իսկ կուտակման ֆոնդը մնում է պետության մոտ: Վերջինս ծախսվում է հիմնականում նոր գործարանների, ֆաբրիկաների, հանքերի, ճանապարհների շինարարության վրա: Հարց է ծագում, ո՞ր ֆոնդը պետք է ավելի մեծ լինի, սպառմա՞ն, թե՞ կուտակման:

Ռոբինզոն Կրուզոն, իր կղզում հավաքելով բերքը, մտքերի մեջ ընկավ՝ եթե սերմերի մի մասը պահի եկող տարի ցանելու համար, ապա մնացածը կարող է ուտել: Բայց եթե դիմանա ևս մեկ տարի, թողնելով ավելի շատ սերմացու, ապա հաջորդ տարվա բերքը կլինի այնքան, որ կբավականացնի և՛ ուտելուն, և՛ սերմացվին, և՛, նույնիսկ պաշարին: Ռոբինզոնն այդպես էլ արեց:

Նույնն էլ մարդկային հասարակության մեջ է կատարվում: Եթե հասարակությունը սպառի ողջ



digitised by A.R.A.R.@

Մտնում ենք հենց առաջին պատահած՝ 6-րդ Ա դասարանը:

— Ո՞վ է ձեր ջոկատի խորհրդի նախագահը,— հետաքրքրվում ենք մենք:

Խելամիտ աչքերով մի աղջիկ, առանց իմանալու, թե ով ենք, ինչու ենք եկել, ահաբեկված վրա է տալիս.

— Ես եմ, բայց էլ չեմ ուզում, ինձ փոխե՛ք, խընդրում եմ: Կարծում եք չե՞մ կարող, կարող եմ, բայց ինձ չեն լսում:

— Ինչո՞ւ... Մի՞թե ձեր դասարանի երեխաները, քո ընկերները այդքան վատն են, որ չեն լսում քեզ:

— Չէ՛, ինչո՞ւ: Մեր դասարանցիները լավն են, միայն թե առանձին-առանձին: Ապա փորձեք նրանցից մեկնումեկին դիտողություն անել կամ որևէ հանձնարարություն տալ...

Իսկ ջոկատավարի մասին. մի քանիսն ասացին, որ 10-րդում մի աղջիկ կա, նա է, մյուսները, թե 9-րդցի մի տղա է:

Դասարանը անցյալ տարի ոչ մի երկտարեցի չի ունեցել, իսկ տարեվերջում դարձել է դպրոցի 100 տոկոսանոց դասարաններից մեկը և նվաճել դպրոցի փոխանցիկ դրոշը: Դասարանի 36 աշակերտների մեծ մասը զբաղվում է սպորտով, շատերը գնում են երաժըշտական դպրոց, ընթերցասեր են, հաճախում են կինո և թատրոն, հեռուստացույց են նայում, ձայնագրում ժամանակակից երաժշտություն: Թվում է, ամեն ինչ լավ է: Բայց ինչո՞ւ պատկերացում չունեն պիոներական հին և նոր երթերի մասին, չեն ճանաչում իրենց ջոկատավարին, չեն մասնակցում ոչ մի շարժման ու մրցման, թե՛ առանձին-առանձին, թե՛ օղակով ու ջոկատով չեն կատարում ոչ մի հասարակական աշխատանք, կռպտում են ընկերներին, միմյանց դիմում ածականներով, կեղտոտում են դասասենյակը, դըպրոցը:

ԿԱՏՅԱ ՍԱՐՎԱՋՅԱՆ

*արտադրվածը, պաշար չթողնի ապագա շինարարության համար, ապա արտադրությունն անմիջապես կդադարի աճել: Կյանքը երկրում կսկսի վատանալ, որովհետև մարդկության քանակն անընդհատ աճում է և նրանց պետք է ավելի ու ավելի շատ արտադրանք:*

*Իսկ եթե ողջ եկամուտը գնա կուտակման ֆոնդ, կտուժի ըսպառման ֆոնդը: Մարդիկ կաշխատեն, կաշխատեն, իսկ կյանքն այնպես էլ չի լավանա:*

*Տնտեսագետներն ավելի ու ավելի են ստիպված մտածել ու հաշվել, թե ինչպես առավել լավ բաժանել կուտակման և սպառման ֆոնդերը:*

*Այսօր պետության եկամուտն անհամեմատ աճել է, ի տարբերություն առաջին հնգամյակների, որոնց ժամանակ ստիպված էին լինում առաջնորդվել հետևյալ օրենքով. «Որպեսզի մեր երեխաներն ավելի լավ ապրեն, առայժմ պինդ ձգենք գոտիներս, ավելի շատ կառուցենք»: Այսօր կարելի է արագորեն մեծացնել սպառման ֆոնդը, որն արդեն կուտակման ֆոնդից մի քանի անգամ մեծ է:*

*Սպառման ֆոնդը նույնպես բաժանվում է երկու մասի՝ անձնական սպառման և հասարակական սպառման ֆոնդերի: Ահա հենց հասարակական սպառման ֆոնդերի մեջ մտնում են այն բոլորը, ինչ տրվում է անվճար կամ չափազանց էժան. ուսումը, առողջապահությունը, բնակարանային շինարարությունը, տրանսպորտը և շատ այլ բաներ: Ենթադրենք, մարդը ստանում է ցածր աշխատավարձ, իսկ ընտանիքը մեծ է՝ հինգ երեխա: Եթե մեր երկրում չլինեին սպառման հասարակական ֆոնդեր՝ անվճար մանկապարտեզներ, այգիներ, մանկամսուրներ, պիոներական ճամբարներ, դպրոցներ, հիվանդանոցներ, էժան բնակարաններ և տրանսպորտ, շատ դժվար կլիներ նրա ապրուստի հարցը: Ըսպառման հասարակական ֆոնդերը մեր երկրում աճում են ավելի արագ, քան անհատական սպառումը: Բոլոր «անվճար» բաների համար պետությունը չի խնայում միլիարդներ:*

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*





digitised by A.R.A.R.@



# ՖՈՒՏԲՈԼԻՍՏ-ԲԵՎԵՌԱՂՎԵՍԸ



Է. Ֆ. ՍԱՎԻՑԿԻ

Շպիցբերգեն պատ կղզու հսկայական տարածության վրա նույնիսկ մի թփի չես հանդիպի, էլ չխոսենք ծառի մասին. դրա փոխարեն այնտեղ ուպածիր չափի թռչնային հավաքատեղիներ կան: Սրանց շուրջն էլ հենց պտտվում են արագաշարժ և նրբագեղ բևեռաղվեսները: Ճիշտ է, հյուսիսային ջրահավերը, կայրաները կամ բադիկները նրանց նկատելուն պես սարսափելի աղմուկ են բարձրացնում, սակայն խորամանկ բևեռաղվեսները աղմուկից չեն վախենում և հասցնում են ճանկել ձուն, ձագին կամ նույնիսկ իրեն՝ թռչնաբնի տիրուհուն: Ձյունասպիտակ այս գիշատիչների համար կյանքը վատանում է չորս ամիս տևող բևեռային գիշերվա ընթացքում (ամռանը դրանք մոխրագույն և անբարետես են դառնում): Երբ բոլոր ջրային թռչունները հարավ են չվում, կղզու վրա մնում են միայն բնիկները՝ հյուսիսային վայրի եղջերուները, ոչխարացուլերը, մեկ էլ սպիտակ կաքավները: Թե կարող ես՝ կաքավ բռնիր: Չնայած սա դյուրահավատ է և մարդուն մոտ է թողնում մինչև մի քանի մետր, սակայն բևեռաղվեսներից, որոնք կղզու վրա սրա միակ թշնամիներն են, սաստիկ կզգուշանում է:

Բևեռային ցերեկների սկսվելուն պես, երբ սահում ես դահուկներով կուրացուցիչ ձյունասպիտակ խոպան տարածության վրայով, հանկարծ մոխրագույն մի թմբիկի կարող ես հանդիպել: Դա եղջերվի բրդի կույտ է, կողքին, ձյան մեջ՝ մի բույն: Ձմռան սառնամանիքին ընկել-մեռել է եղջերուն, վրան ձյուն է դիզվել, բքից միսը փայտացել, բայց բևեռաղվեսը ձյան հաստ շերտի տակից էլ մսի հոտն առել է, ճամփա է փորել իր համար դեպի սառած միսը և ուտում է այն, իսկ բուրդը դուրս է շպրտում: Այնպիսի ծանր օրեր են գալիս, որ նույնիսկ եղջերվի չոր եղջյուրներն են կրծոտում: Ուտելիք հայթայթելու նպատակով բևեռաղվեսները «հետախուզում» են նաև բանվորական ավանները:

Բարենցբուրգ ավանի հանքագործները աշխատանքի գնալիս իրենց հետ կերակրով լի թերմոս-



# ԴԻՆՈԶԱՎՐԵՐԸ ԹՈՒՆԱՎՈՐՎԵ՞Լ ԵՆ

Այս լուրը եկել է դարերի խորքից և հեռագրի լեզվի վերածվելով կհնչի այսպես. «Դինոզավրերը թունավորվել են մ. թ. ա. 70.000000 թվականին»: Հաղորդագրությունը ֆանտաստիկ վեպից վերցրած հատվածի է նմանվում: Սակայն բրիտանացի բիոքիմիկ-պալեոնթոլոգ պրոֆեսոր Թ. Սվեյնի հետազոտությունները հենց այսպիսի եզրակացության հանգեցրին: Նա ենթադրում է, որ հսկայական մողեսազգիների ոչնչացման պատճառը ո՛չ սառցապատումն է եղել, ինչպես կարծում էին առաջ և ո՛չ էլ այն, որ դինոզավրերի նյարդային համակարգն անբավարար արագությամբ էր արձագանքում արտաքին աշխարհի փոփոխությանը: Թ. Սվեյնը մի քա՛նի տարի անընդմեջ ուսումնասիրում էր Միջերկրական ծովի կրիաներին (սրանք հազվագյուտ, սողունազգիների ընտանիքին պատկանող, նախապատմական ծագում ունեցող խոտակեր կենդանիներ են): Բանն այն է, որ դինոզավրերը նույնպես խոտակեր էին: Սակայն ի տարբերություն կրիաների՝ շատ ավելի հսկայամարմին, և երկուսից-երեք տոննա քաշ ունենալով, մի օրում խժռում էին մոտ 200 կգ կանաչ պանգված: Դինոզավրերի սովորական կերակուրը կազմում էին ՝փշատերև և պտերազգի բույսերը: Սակայն երկրագնդի բուսական ծածկույթը փոփոխվում էր և բույսերի այս տեսակներն աստիճանաբար դուրս մղվեցին ծածկասերմերի կողմից: Իսկ ծածկասերմերի ցողունների և տերևների մեջ կան տանիններ և ալկալոիդներ, նաև ստրեխնին և մորֆի: Այս նյութերը փոքր քանակությամբ անվնաս են, սակայն մեծ քանակությամբ ընկնելով օրգանիզմ, առաջացնում են մահացու թունավորում: Թ. Սվեյնի կարծիքով հենց այս է դինոզավրերի ոչնչացման պատճառը: Նրա ենթադրությունն հաստատում է նաև այն փաստը, որ՝ քարացած դինոզավրերի ըղեղի մասը հայտնաբերվել է ուժեղ թունավորվածությանը բնորոշ ջղաձիգ դիրքերով: Խոտակեր դինոզավրերի անհետացումը, բնականաբար, հանգեցրեց նաև հսկա մսակեր մողեսազգիների ոչնչացմանը:



digitised by A.R.A.R.@

ներ էին տանում: Նախաճաշելուց հետո կերակրի մնացորդները դեն էին շպրտում: Մի քանի օր հետո նրանք նկատում են, որ հենց նախաճաշի ժամին երկու բևեռաղվես իրենց հյուր են եկել: Նստել են հեռվում և սպասում են, թե երբ նախաճաշը կվերջանա և կերակրի մնացորդները իրենց կհասնեն: Հանքափորները իրենց նոր ծանոթների համար ճարպի և երշիկի կտորներ են սկսում բերել: Վերջիվերջո բևեռաղվեսները այնպես են վարժվում, որ մսի, պանրի ու երշիկի կտորները վերցնում են ուղղակի նրանց ձեռքից: Ամառվա ընթացքում նրանք համարյա ընտանի դարձան, բայց իրենց շոյել թույլ չէին տալիս: Աշնան մոտ, երբ նրանց մորթին էլի թավոտ և ձյունասպիտակ էր, նրանք դարձյալ վգույշ դարձան և ուտելիքը հեռվից էին ընդունում, կարծես հասկանում էին, որ հիմա արդեն իրենց գեղեցիկ մորթին մարդու համար արժեք է ներկայացնում:

Մի անգամ մի քանի բևեռաղվես կանոնավոր կերպով սկսեցին «հետապնդել» երկրաբանների կայանի շրջակայքը: Կայանից ոչ այնքան հեռու գտնվում էր մի կերպ հարմարեցված ֆուտբոլային դաշտը (երկու դարպաս՝ ցանցերով): Երևի բևեռաղվեսներից մեկը որոշել էր գիշերը (այն ժամանակ արևը դեռ մայր չէր մտնում) դարպասի առջև կանգնել դարպասապահի դերում: Ով է եղել նրա եղբայրակիցներից «հարձակվողի» դերում, հայտնի չէ, բայց հարվածն, ըստ երևույթին, ուժգին և նենգավոր է եղել. «գոլկիպերը» ուղիղ ներքին աջ անկյունն է շպրտվել և խճճվել է ցանցի մեջ: «Դարպասապահին» սունկ հավաքող կանայք են առավոտյան նկատել: Սակայն բևեռաղվեսը չէր թողնում իրեն ապատել, վնգստում էր, կծոտում: Օգնեցին մոտակա շինարարական մասի վարորդները, որոնք ձեռքներին թաթմաններ հագած, ապատեցին սուր ատամնավոր կրովարար. «ֆուտբոլիստին»:

Ֆուտբոլիստ - բևեռաղվեսների դափնիները կղզու մյուս բնիկների՝ եղջերուների նախանձը շարժեց: Նրանցից մեկը որոշեց հանդես գալ իբրև կենտրոնական հարձակվող: Արդյունքն եղավ այն, որ ամբողջ ցանցը մնաց «Ֆորվարդի» եղջյուրների վրա: Բավական ժամանակ պահանջվեց, մինչև այդ կարդարանքը հանվեց նրա եղջյուրների վրայից:

Բարենցբուրգի ֆուտբոլիստներն անհանգստացած են. որտե՞ղ պիտի խաղան հաջորդ սեզոնը նրանք իրենց սիրելի խաղը, եթե բևեռաղվեսներից ու եղջերուներից հետո մարզադաշտ դուրս գան 500—600 կգ կշռող ոչխարացուլերն ու սպիտակ արջերը:

Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ

# ԲԱԲՈՒԻՆՆԵՐԸ Ի՞ՆՉ ԵՆ ԱՆՈՒՄ ՔԱՐԵՐԸ

Հիմա արդեն շատ քչերն են կասկածում, որ շիմպանզեները կամ բաբուինները օգտվում են յուրահատուկ «աշխատանքի գործիքներից»: Կան նաև տեղեկություններ, թե շիմպանզեները իրենց թշնամիների՝ գիշատիչների կամ մարդկանց վրա փայտեր են շպրտել: Սակայն այն վկայությունը, թե բաբուինները իրենց հետապնդողների վրա քարեր են շպրտում, մինչև հիմա ժխտվում էր գլխավորապես այն պատճառով, որ, մասնագետների կարծիքով, բաբուինների անատոմիական կառուցվածքը նրանց թույլ չի տալիս քարերը նշանառությամբ շպրտելու վերից վար կատարվող շարժումով:

Սակայն Նաիբիայում տարուց ավելի տևած ուսումնասիրությունը ապացուցեց, որ բաբուինների խելքը նրանց թույլ է տվել այդ անատոմիական պակասությունը լրացնել խորամանկությամբ: Զննումների են ենթարկվել կապիկների երեք առանձին խմբեր: Այդ ընթացքում բազմաթիվ անգամ նշվել են այն դեպքերը, երբ անհանգստացած կենդանիները ձորալանջով վերև են բարձրացել և այնտեղից քարեր են շպրտել իրենց հետապնդողների վրա: Բաբուինները դրանով իսկ շրջանցել են իրենց ֆիզիկական կազմվածքի թերությունը:

Կենդանիները քարերը վերցրել են գետնից և մարդու վրա են շըպրտել անկասկած, չվրիպելու մտադրությամբ: Այդ «գործով» զբաղված յուրաքանչյուր կապիկ աշխատել է գտնվել իր նշանակետից վերև: Մի քանի դեպքերում նկատվել է, որ երբ ձորալանջին թափված քարերը վերջացել են, բաբուինները ջանադրաբար աշխատել են պատ կազմող ժայռերի արանքներից նոր քարեր հանել:

Մոտեցող մարդկանց վրա քարեր շպրտելու հետ միաժամանակ, բաբուինները միշտ արձակել են «վաղու-ու» հնչյունը, որը տիպական է եղել այդ տեսակի տագնապի ազդանշանի համար: Բաբուինները արձակել են նաև հաչոցի նմանվող հնչյուններ, որ արտահայտել է նրանց մարտական տրամադրությունը: Այս հանգամանքը նույնպես հաստատում է նրանց գործողությունների կանխամտածված լինելը:

ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ «ՊԻՈՆԵՐ» №4

ԺԱՄԱՆՑ ժամը 10 1/4-ին



digitised by A.R.A.R.@




Հանքային ջրերը Հայաստանի բնական հարստությունների մեջ գրավում են առաջնակարգ տեղերից մեկը: Հանրապետության բացառիկ հարստությունը այս ջրերով հնարավորություն է տալիս ծածկել երկիրը առողջարանների լայն ցանցով, դարձնել մեր հանրապետությունը առողջարանների երկիր: Դժվար է նշել երկրագնդի մի ուրիշ անկյուն, որտեղ փոքր տարածքի վրա կենտրոնացած հազարամյակների պատմություն ունեցող ճարտարապետական կոթողները տեղադրված լինեն հրաշալի բնակլիմայական պայմաններում և ունենան տարբեր տեսակի հանքային բարձրորակ ջրերի ելքեր:

Հայաստանի տարածքում կան շուրջ 700 հանքային աղբյուրներ և շատրվանող հորատանցքեր: Արարատի, Արագածի, Ջերմուկի, Հանքավանի, Արզնու, Տաթևի, Բժնի-Արզականի աղբյուրներն այնքան հզոր են, որ լեռնային գետակներ են առաջացնում: Հանրապետության հանքային ջրերը իրենց քիմիական կազմով ու առողջարար հատկություններով խիստ տարբեր են և կազմում են 22 տիպ, որոնց օգտագործման հեռանկարները պարզապես անսահման են: Հայաստանի սահմաններից դուրս տարածված է Արզնի, Ջերմուկ, Հանքավան առողջարանների բարի համբավը: Հանքային ջրերի հարուստ պաշարներ են հետախուզված Ջարում, Արարատում, Դիլիջանում, Ֆիոլետովոյում, Կամոյում, Տաթևում, Կեչուտում, Լենինականում, Լիճքում, Մարտունիում, Ուռուտում, Լալիգյուղում, Վեդիում, վերջին տարիներս նաև Բժնի-Արզականում և Կիրովականում:

Դարերի ընթացքում մարդիկ ձգտել են օգտագործել հանքային ջրերը տարբեր հիվանդությունների բուժման համար: Ավելի հաճախ բուժել են մաշկային հիվանդությունները: Այդ են վկայում հանքային աղբյուրների անունները՝ Քոս-ջուր, Քոս-աղբյուր, Բորոտ-աղբյուր, Ջերմուկ և այլն: Մաշկային հիվանդություններից քոսը, որ կեղտից առաջացած հիվանդություն է, մեր ժամանակներում արդեն անծանոթ է, մինչդեռ առաջներում պատիժ է եղել աղքատության մեջ ապրող բնակչության համար: Տարվա տաք եղանակներին հանքային աղբյուրների մոտ հավաքվում

*Ջերմուկ առողջարանի ըմպելասրահը*



էին հեռուներից եկած հիվանդները՝ իրենց անկողիններով, վրաններով և բուժվում էին իրենց մատչելի ձևերով: Նրանք երբեմն կառուցում էին փոքրիկ ավազաններ, այլ տեսակի հարմարություններ, որոնց հետքերը պահպանվել են մինչև այժմ: Տաթևի հանքային աղբյուրները օգտագործվել են Սյունիքի իշխանների կողմից դեռ 1000 տարի առաջ: Հին ժամանակներում հայտնի են եղել մասնավորապես Արզնու հանքային աղբյուրները: 1925 թվականին, երբ մաքրում էին Արզնու №1 աղբյուրի ջրավազանը, մարդիկ ականատես եղան մի հետաքրքիր երևույթի: Հնում սովորություն է եղել, որ լողացող հիվանդները մանր դրամ նետեն ավազանի հատակը, և ահա մաքրելիս հաջորդաբար սկսեցին դուրս գալ սկզբում սովետական դրամներ, հետո՝ ցարական, որոնցից նախ՝ Նիկոլայ I-ի, ապա՝ Ալեքսանդր I-ի ժամանակվա դրամներ: Գործը չսահմանափակվեց այս դրամներով: Գտնվեցին նաև պարսկական, թուրքական և այլ դրամներ և վերջապես այս նույն աղբյուրների մոտակայքում հայտնաբերվեցին օբսիդիանից պատրաստված քարե դարի մարդու գործիքներ:

Չնայած Հայաստանի հանքային աղբյուրների մի մասը վաղուց հայտնի էր և երբեմն նրանց վերագրվում էին գերբնական հատկություններ, բայց առողջարանները կառուցվել են և հանքային ջրերի պլանաչափ ուսումնասիրությունն ու հետազոտությունը սկսվել է միայն սովետական իշխանության տարիներին: Այս գործում մեծ ավանդ էր ներդրել ականավոր երկրաբան Ա. Պ. Դեմյոխինը, որը համարվում է Հայաստանի ջրաերկրաբանության հայրը: Նրա անվան հետ են կապված հանքային ջրերի գրեթե բոլոր խոշոր հանքավայրերը, որոնց թվում և Արզնին: Արզնու ջուրը բուժիչ ազդեցություն է ունենում ամենատարբեր հիվանդությունների վրա: Այստեղ բուժում են ստամոքսային համակարգի, աղեստամոքսային, լյարդի, լեղապարկի և այլ հիվանդություններ: Արզնու ջրերը նման են Գերմանիայի նշանավոր առողջարաններ Նաուգեյմի և Վիսբադենի ջրերին:

2000 մետր բարձրության վրա, Արփա գետի կիրճում է գտնվում Ջերմուկը, որի ջրերը նման են Չեխոսլովակիայի աշխարհահռչակ Կարլովի Վարի առողջարանի ջրերին: Ջերմուկի մասին տեղեկությունները գալիս են միջնադարյան գրականությունից, դեռևս 13-րդ դարից, բայց նույնիսկ 19-րդ դարին վերաբերող

digitised by A.R.A.R.@

աշխատանքներում հիշատակվում է միայն մի ելք: Այժմ Ջերմուկում հանքային ջրի 44 ելք կա, որոնք ունեն բարձր ջերմաստիճան և պարունակում են կենսականորեն ակտիվ տարրեր՝ բուժիչ հատկությունների իմաստով:

Հանրապետության ամենաերիտասարդ առողջարանը Հանքավանն է, որի ջրերը նման են Եսենտուկիի ջրերին և նույնիսկ գերազանցում են դրանց իրենց մի շարք հատկություններով: Հանքավանը գտնվում է Մարմարիկ գետի վերին հոսանքում, անտառներով ծածկված լեռների գրկում: Դա հին Միսխանան է, որը մի փոքրիկ հունական գյուղ էր, իսկ այժմ դառնում է միութենական նշանակություն ունեցող առողջարան:

1967 թ. Բժնի-Արզական գյուղերի շրջակայքում երկրաբանները հայտնաբերեցին հանքային տաք ջրի նոր մեծ հանքավայր: Այս ջրերը իրենց քիմիական կազմով տարբերվում են մինչ այդ հայտնաբերված ջրերից, մի հանգամանք, որ պայմանավորում է նրանց բացառիկ արժեքավորությունը: Բավական է ասել, որ արդեն հիմա տեղի բնակիչները և վբոսաշրջիկները լողանում են տաք ջրերի շատրվանների տակ, բուժելով կանացի հիվանդություններ: Բժնի-Արզականի ջրերի քիմիական և գազային կազմի ուսումնասիրությունը ցույց է տվել, որ նրանք նման են ֆրանսիական «Վիշի» և վրացական «Բորժոմի» հանքային ջրերին և գերազանցում են դրանց իրենց քանակով ու բուժիչ հատկություններով: Դրանց մեջ կան բուժման տեսակետից այնպիսի ակտիվ տարրեր, որոնք բացակայում են «Բորժոմի» ջրում: Ընդհանրապես Հայաստանի ջրերը հարուստ են միկրոտարրերով, որոնք հաճախ նշանակալից դեր են խաղում ջրի որակը որոշելիս: Այդ տարրերից են սիլիցիումը, երկաթը, ցինկը, պղինձը, կապարը, մոլիբդենը, լիթիումը, արծաթը, մկնդեղը, ստրոնցիումը, բորը, բրոմը, յոդը, ֆտորը: Երբեմն տարրերի քանակությունը ջրի մեջ հասնում է այնպիսի տոկոսի, որ ջուրը դառնում է այդ տարրի ստացման աղբյուր: Այդպիսիք են, օրինակ, Եղեգնաձորի շրջանում գտնվող Օրբատեղ հանքավայրի բոր պարունակող ջրերը:

Ինչպե՞ս են առաջանում հանքային ջրերը: Այս հարցին մեկ ընդհանուր պատասխան տալ հնարավոր չէ: Տարբեր հանքային ջրեր առաջանում են տարբեր ձևով, դա կախված է ջերմությունից, ապարների կազմությունից, որոնց մեջ տեղի են ունենում դրանց շըրջապտույտները, գազային բաղկացուցիչների քանակից և այլն:

Հանքային ջրերի հանույթի վայրերում կառուցված են բազմաթիվ առողջարաններ ու հանգստյան տներ, սակայն մեր հանրապետությունն այս տեսակետից դեռ անսպառ հնարավորություններ ունի:

ՍՈՍ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
ինժեներ-երկրաբան




Լույս է տեսնում 1926 թվականից

№ 5 մայիս 1977թ.




# ՊԻՈՆԵՐ


ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջի գունավոր լուսանկարը՝*
*ԶԱՎԵՆ ԲԸՏԻԿՅԱՆԻ*


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՊԵՏՐՈՍՅԱՆ Թ., ՍԱՐԳՍՅԱՆ Լ. (պատասխանատու քարտուղար), ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, №15:

Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:

ՎՖ 04323: Պատվեր 639: Տպաքանակ՝ 55106: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 5/V 1977 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:



© «Պիոներ» 1977 թ.



digitised by A.R.A.R.@

ԳԻՆԸ 15 Կ.

ԻՆԴԵՔՍ 77806

# ՄԱՆՈՒՇԱԿԻՆ

Խոսք՝ Գ. ԵՂԻԿՅԱՆԻ

Երաժշտությունը՝ Ն. ԱՍԼԱՆՅԱՆԻ

Allegretto cantabile

Ա՜յ մանուշակ քնքշաբույր,
Ծաղիկների սիրո՛ւն քույր,
Հերիք մնաս խոտի տակ,
Հերիք պահես աչքդ փակ:

ԿՐԿՆԵՐԳ.— Դե արթնացի՛ր, ի՜մ սիրուն,
Առանց քեզ էլ ի՞նչ գարուն:

Գարունն արդեն եկել է,
Նախշուն շորեր հագել է,
Հենց աչիկդ բաց անես,
Այտդ շաղով թաց անես,

ԿՐԿՆԵՐԳ...

Արևը քեզ դուր կգա.
Բզեզն էլ քեզ հյուր կգա,
Կիջնի գիրկդ, կապտաչիկ,
Մեղուն կտա քեզ պաչիկ:

ԿՐԿՆԵՐԳ...

digitised by A.R.A.R.@